ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

ՂՈՒԿԱՍ ՍԵԲԱՍՏԱՑԻ



# ԴԱՒԻԹ ԲԷԿ
կամ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՂԱՓԱՆՑՒՈՑ

*Ձեռագիրը՝ Հ. ՍԱՄՈՒԷԼ ԱՐԱՄԵԱՆԻ*

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ—1992

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

ՂՈՒԿԱՍ ՍԵԲԱՍՏԱՑԻ



# ԴԱՎԻԹ ԲԵԿ
## ԿԱՄ
# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՂԱՓԱՆՑՈՑ

*Թարգմանությունը և առաջաբանը*
ԱՐՇԱԿ ՄԱԴՈՅԱՆԻ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ—1992

*Հրատարակության է պատրաստել Ա. Գ. Աբրահամյանը*
*Խմբագիր՝ Ռ. Մ. Ղազարյան*

Ղուկաս Սեբաստացի. *Դավիթ-Բեկ կամ Պատմու-*
Ղ242ղ *թյուն ղափանցոց.— Եր.։ Երևանի համալս. հրատ.*
*1992.—112 էջ։*

*Վենետիկի Մխիթարյան միաբանության անդամ Ղուկաս Սեբաստացու պատմությունը նվիրված է 18-րդ դարի առաջին երեսնամյակի ազատագրական շարժումներին։*

Ս $\frac{0503020913}{704\ (02)-92}$

ԳՄԴ 63.3(2Հ)48

ISBN *5—8084—0186—0*

ГУКАС СЕБАСТАЦИ
**ДАВИД-БЕК ИЛИ ИСТОРИЯ КАФАНЦЕВ**
**Издательство Ереванского университета**
**(На армянском языке)**
Ереван — 1992

## ԱՌԱՋԱԲԱՆ

Ղուկաս Ստեփանոսյան Սեբաստացին (1709—1752) մեկն էր Վենետիկի Մխիթարյաններից, որոնց կյանքն անցնում էր ամենօրյա գիտական պարապմունքներով։ Նրա երկերից մասնավոր հետաքրքրություն պիտի ունենա «Համառօտ պատմութիւն թագաւորացն Հայոց և Աշխարհագրութիւն Հայաստանի և Աշխարհագրական բառարան» ստվար աշխատությունը, որ դեռևս անտիպ է և, դատելով եղած տեղեկություններից, հանրագիտական բնույթի է։ Այստեղ, ի միջիայլոց, Ղուկաս Սեբաստացին մեկ անգամ ևս համառոտակի անդրադառնում է Կապանի կամ Սյունիքի ապստամբությանը, նկատելով. «Այս ամէն տեսցես ի համառօտ պատմութեան, զոր գրեցաք»,— ակնարկելով մեզ հասած Պատմությունը։ Պակաս կարևոր չէ, որ նա 1737 թ., հավանաբար Պատմության շարադրանքը պատրաստելուց հետո, կազմել է նաև Դավիթ Բեկի մարտերի քարտեզը[1]։

Ղուկաս Սեբաստացու աշխատությունը ԺԸ դարի հայ ազատագրական շարժումների ամենանշանակալի երևույթներից մեկին է նվիրված և վերաբերում է այդ հարյուրամյակի 20-ական թվականներին, երբ Հայաստանը հեծում էր օտար զավթիչների լծի տակ, նրա արևելյան հատվածը Պարսկաստանի տիրապետության ներքո էր, արևմտյանը՝ թուրքական բռնատիրության։

1720 թ. աֆղանների ապստամբությունը ցնցեց ամբողջ Իրանը, վերջ տալով Սեֆյան հարստությանը։ Օգտվելով պատեհ իրավիճակից, Սյունիքի տանուտերերն ու իշխան-

---

[1] *Ղուկաս Սեբաստացու կյանքն ու գործունեությունը բավական հանգամանորեն ներկայացված են «Բազմավէպ» հայագիտական մատենաշարի ԺԲ գրքում. «Դաւիթ Բէկ կամ Պատմութիւն Ղափանցւոց», Հառաջաբան, բնագիր, խմբագիր օրինակ և ծանօթագրութիւններ. Աշխատասիրեց Հ. Սամուէլ Արամեան, Վենետիկ—Ս. Ղազար, 1978, էջ 183—194։ Քարտեզը՝ 48—49 էջերի միջև, ներդիր։*

ները որոշեցին գործնական քայլերի դիմել իրենց վաղեմի ազատագրական ձգտումներն իրականացնելու ուղղությամբ: Սակայն նրանց դեմ մեկից ավելի թշնամիներ կային: Տեղացիներին մեծամեծ վնասներ էին պատճառում Սյունիք թափանցող թրքախոս քոչվոր ցեղերը, պարսկական կողոպտիչ խաները ու բեկերը, ռազմակալական ներխուժումներով ժամանակ առ ժամանակ երկիրն ասպատակող թուրք փաշաները: Սրանք երբեմն աջակցություն էին ստանում մահմեդականություն ընդունած տեղացի որոշ մեծահարուստներից:

1722 թ. ամռանը ռուսական զորքերը Աստրախանից շարժվեցին դեպի հարավ և առանց մարտերի գրավեցին Կասպից ծովի արևելյան ափերը՝ մինչև Գիլան: Դա նոր հույսեր արթնացրեց Կովկասի քրիստոնյաների, հատկապես արցախցիների շրջանում, նորովի գոտեպնդելով ու ոգևորելով՝ ելնելու օտար զավթիչների դեմ: Հետագայում Իվան Կարապետը՝ «բարոն գրափ Գավրիլ Իվանիչ Գոլովքինին» հղած նամակում հիացմունքով գրում էր՝ նկատի ունենալով Արցախի հայությանը. «Էնպես կռուարար խալղ որ էս տեղ կայ, ոչ ինչ տեղ կայ»[2]: Բայց հայությանն այս հարցում հիասթափություն էր սպասում:

Հաջորդ տարին արդեն նշանավորվեց Սյունիքում հայկական անկախ իշխանության հաստատումով: Հետագա պայքարը նորանոր հաջողություններ բերեց Դավիթ-Բեկին և իր զինակիցներին:

1725 թ. գարնանը օսմանյան բանակի զորամասերը մոտեցան Սիսիանի ու Կապանի բարձունքներին և պարտություն կրեցին: Նրանք մեծ ուժերով պաշարեցին Դավթի ամրոցը՝ Հալիձորը: Այստեղ, ինչպես հայտնի է ուրիշ աղբյուրների վկայությունից, վերստին փայլել է զորավարի տաղանդը. նա դիմել է մարտավարական հնարամտության. «Ուներ Դաւիթ յամրոցի անդ իւրում մատակ ձիս իբր վաթսուն փոքր ինչ աւելի կամ պակաս: Զսոսա առեալ Դաւթի և արանց նորա՝ արձակեցին զանխուլ ի գիշերի ի բանակ այլազգեացն. Եւ քանզի բազումք յերիվարաց անտի այլազգեաց մատա-

---

2 *Г. А. Эзов*, Сношения Петра Великого с армянским народом СПб, 1898, с. 426.

կախանձք էին, ի դիմել մատակաց ի բանակ անդր, անհնարին խնճիւնք և կատաղութիւնք նոցին լցին շփոթութեամբ զխորանս նոցա, և բազումք յերիվարաց անտի խզեալ զդանդանաւանդս և զերասանակս իւրեանց, և սաստկութեամբ յարձակեալ՝ կործանեցին զքանի մի վրանս, և կիցս արձակելով սպանին զոմանս. և յաղաղակել պահապանաց և համայն զօրացն՝ անկաւ աղմուկ ի բանակի անդ»[3]: Նույն տեղեկությունը ավելի ամփոփ հաղորդում է Մ. Մաղաք-Թեոփիլյանը: Տեսնենք նաև նրա պատմածը, թեև չի բացառվում, որ նա օգտված լինի Մ. Չամչյանից. «Եւ յայնժամ Դաւիթ ձեռն էարկ ի նոր հնարս ազատելոյ ի նոցանէ: Ունէր առ իւր զվաթսուն մատակ երիվարս. և զի գիտէր թէ այլազգեացն էին առհասարակ որձք մատակախառք, արձակեաց զմատակս իւր ի բանակ սոցա. և ի խառնիլ ձիոցն, անկաւ շփոթութիւն մեծ յայլազգիս. և յայնմ պահու յարձակեալ ի վերայ նոցա Դաւթի, ցիրուցան արար զնոսա, և բազում աւարաւ եմուտ յամրոցն»[4]:

Հալիձորում յոթ օր դիմադրելուց հետո, գիշերով Դավիթը դուրս է գալիս բերդից: Հայ քաջազունները հալածում ու դուրս են շպրտում թշնամու գերազանց ուժերը: Պակաս տպավորիչ չէր և Մեղրիի ճակատամարտի վախճանը:

Կապանի մարտիկների համար մեծ աջակցություն էին, անշուշտ, Արցախի մելիքների ազատագրական կռիվները, որոնք ի վերջո հաջողությամբ պսակվեցին: Արցախի ազատամարտիկները ուշի-ուշով հետևում էին Կապանի կռիվներին, ուրախանում այդ հաջողություններով և օգնության ձեռք մեկնում հարկ եղած ժամանակ:

Աննկուն, անընկճելի էին Արցախի և Կապանի հայրենասերները: Հայ ազատագրական մտքի խոշորագույն դեմքե-

---

[3] Մ. Չամչեանց. *Պատմութիւն Հայոց, Հ. Գ, Վենետիկ, 1784, էջ 796—797։ Հմմտ. նաև՝ «Համառօտութիւն պատմութեան Հայոց սկսեալ ի Նախնոյն Հայկայ մինչև ցաւուրս Ղուկասու սրբազան կաթողիկոսին, ցամ Տեառն 1784 և Հայոց ՌՄԼԳ, բովանդակեալ ի վեց գիրս, Աշխատասիրեալ Զմիւռնացի Յովհաննու Մելիք-Սելիմեանց, յաւուրս Յովհաննէս սրբազան կաթողիկոսի ամենայն Հայոց յամի Տեառն 1829, ի սուրբ Էջմիածին. Մաշտոցի անվան մատենադարան, ձեռ. 2888, թղ. 337ա։*

[4] Մ. Մաղաք-Թեոփիլեան, *Կենսագրութիւն երևելի արանց, Հ. Ա, Վենետիկ, 1839, էջ 185։*

րից մեկը՝ Հովսեփ Էմինը, ԺԸ դարի վերջերին խոսելով դարասկզբի անցուդարձերի մասին, իր ժամանակակիցներին ոգևորելու համար հիշեցնում էր սյունեցիների օրինակը։ «Հովսեփ Էմին. Իր կյանքն ու արկածները» գրքում նա նշում էր, թե լեռնաքնակ հայերը «ազատ էին և իրենց մանկությունը իսկ զենք կը գործածեին»[5]։

Արցախի և Կապանի իշխանները նախորդ դարի սկզբներին արդեն կարողանում էին պաշտպանել իրենց իրավունքները։ Եվ հաջորդ դարի երրորդ տասնամյակի նրանց մաքառման արդյունքը եղավ այն, որ 1736 թ. Նադիր շահը հայ մելիքներին, Վրաստանի թագավորի նման, ճանաչեց վալիներ (կուսակալ, նահանգապետ)։ Մելիքը (իշխան, տեր, թագավոր) հարկատու էր անմիջորեն շահին և ինքն էր երկրամասի ժողովրդի տերն ու առաջնորդը, ինքն էր իրագործում երկրի վարչական, իրավարարական, ինչ-որ չափով՝ նաև օրենսդրական կառավարումը։ Մելիքի իշխանությունը ժառանգական էր. հոր մահից հետո մելիք էր դառնում ավագ որդին, իսկ նրա մյուս եղբայրները կոչվում էին բեկ։ (Այս հարցերի մասին հանգամանորեն խոսում է Րաֆֆին «Խամսայի մելիքությունները» մեծարժեք ուսումնասիրության մեջ)։

Դավիթ-Բեկի Պատմության հեղինակը միշտ չէ, որ ցանկալի խորությամբ ու մանրամասներով է ավանդում ԺԸ դարի բախտորոշ եղելությունները։ Իր երկի հենց սկզբում, օրինակ, խոսելով Արցախի ապստամբների մասին, նա գրում է. «Եւ թէ ո՛րպէս հարին վանեցին թէ զԼազկին, թե զՊարսիկն եւ թէ զՕսմանցին՝ ոչ ունիմք գրել. այլ միայն զխմբելոյն Հայոց յեօթնաբերդեան գաւառին Ղափանու եղելոցն ձեռն արկանեմք պատմել»։ Ըստ երևույթին նա այդ հարցերի լուսաբանումից հրաժարվում է այն պատճառով, որ տրվյալ անցուդարձերի մասին նս իրեն պատմել են Ստեփանոս Շահումյանը, տեր-Ավետիսը և մյուսները, չլինելով անմիջական մասնակից կամ ականատես։ Այսինքն՝ Սեբաստացին ի տարբերություն Կապանի մարտերի, մյուս կռիվների վերաբերյալ տեղեկություններն ստացած լինելով «երկրորդ

---

[5] «Հովսէփ էմին. Իր կեանքն ու արկածները», «Հայրենիք», 1926, 8 ապրիլ։

ձեռքից», հարմար չի դատել գրի առնելու: Այդպիսով նրան հայտնի շատ թանկագին տվյալներ մնացել են չարձանագրված և մատնվել մոռացության: Բայց այս փաստը ցույց է տալիս Ղուկաս Սեբաստացու զգուշավորությունն ու պահանջկոտությունը, գիտական բարեխղճությունը: Դա չի նշանակում, թե նրա երկը չունի սրբագրության կարոտ տեղիներ (որոնք ըստ կարելվույն պետք է ճշտել այլևայլ աղբյուրների հաղորդումների համադրությամբ և ուշադիր քըննությամբ): Սակայն ըստ երևույթին այնտեղ հիշատակված թվականների ճնշող մեծամասնությունը և դեպքերի հաջորդականությունը համապատասխանում են իրականությանը: Մանր անճշտությունների պատճառն այն է, հավանաբար, որ Ղուկաս Սեբաստացին պատմությունը գրի է առել դեպքերից առնվազն մեկ տասնամյակ անց: Այդ ընթացքում ինչ-որ բաներ կարող էին աղոտանալ մարդկանց հիշողության մեջ, բայց կար հիմնականը, որովհետև նրան պատմողները ապստամբության անմիջական մասնակիցները էին, մարդիկ, որոնց դերը բնավ երկրորդական չէր և որոնց մասին խոսք եղավ վերևում (Ստեփանոս Շահումյան, տեր-Ավետիս և ուրիշներ[6]): Սրանցից մեկին՝ Ստեփանոս Շահումյանին է վերագրվում ապստամբության նախաձեռնությունը, և ըստ երևույթին այստեղ նույնպես մեծ է ճշմարտության բաժինը:

Դժբախտաբար ապստամբության ղեկավար Դավիթ-Բեկի վերաբերյալ կենսագրական տեղեկությունները առատ չեն: Մասնավոր հետաքրքրություն ունեն նրա ծննդյան և մահվան թվականները: Առաջինի մասին խոսք չկա Ղուկաս Սեբաստացու երկում, իսկ հերոսի վախճանը դրվում է 1728-ին: Նույն թվականն է արձանագրել նաև Մ. Մաղաք-Թեոփիլյանը. «[Դաւիթ] անկաւ հիւանդութեամբ մահու, որով և մեռաւ ի Հալիձոր, յամի Տեառն 1728 ի հասակի իբր

---

[6] *Հ. Ս. Արամյանը ենթադրաբար վերականգնել է ականատես-պատմողներից մեկի ինքնությունը: Դա Հովհաննես անունով երիտասարդն է, որին հետազոտողը հակված է նույնացնելու Դավթի զորավար երկու Հովհաննեսներից մեկին: Հիշյալ երիտասարդի Վենետիկ գալու ժամանակը (1736 թվական՝ ըստ Մխիթարյան միաբանության ժամանակագրության) ևս խոսում է այդ ենթադրության օգտին. տե՛ս «Դաւիթ Բէկ կամ Պատմութիւն Ղափանցւոց», էջ [illegible] և 114:*

54 ամաց, վարեալ զիշխանութիւն իւր զամս վեց»[7]։ Այս վերջին հաղորդումը մեզ հնարավորություն է տալիս ինչ-որ կերպ «ստուգելու» տվյալները. Դավիթը մահացել է Կապան գալու վեցերորդ տարում (1722+6)։ Եթե վստահելի է մահվան 1728-ը, ապա Դավիթ-Բեկը ծնված պիտի լինի 1674 թ. (1728—54)։ Բայց հայագիտության մեջ կասկածի է առնըվել մահվան թվականը։ «Այն հանգամանքը,— գրում է, օրինակ, Աշոտ Հովհաննիսյանը,— որ 1726 թ. Մխիթար-Բեկն է ստորագրում ռուս արքունիքին հղված ուղերձը, ինքյան ապացույց է, որ այդ պահին Դավիթ-Բեկը կենդանի չէր այլևս»[8]։ Այս և մյուս նմանօրինակ ենթադրությունները թերևս դժվար է ապացուցել։

Դավթի և Մխիթարի միջև կարո՞ղ էին լինել տարաձայնություններ, ասենք, դրսից օգնություն ակնկալելու կամ խնդրելու հարցում։ Դավիթ-Բեկն ըստ երևույթին ապավինում էր սեփական ուժերին և աստծու զորությանը։ Այդ դեպքում բնական է, որ նա չպիտի ստորագրեր հիշյալ ուղերձը։ Եթե հիշենք նաև նրանց գժտությունը, որ հարևանցի ակնարկվում է Պատմության մեջ (երկրորդ գլխի վերջում), կարելի է կռահել, որ շարժման երկրորդ փուլում, ժողովրդական ասացվածքով՝ «նրանց ջուրը մի առվով չէր գնում»։ Հնարավոր է, որ այդ պայմաններում Մխիթար սպարապետը ավելի լայն ազդեցության ոլորտ ձեռք բերեր և 1726-ին, ինչպես վկայում է Թ. Կրուշինսկին[9], իշխան ընտրվեր նույնիսկ Դավթի կենդանության օրոք։ Այսպիսի ենթադրության օգտին չի՞ խոսում Պատմության վերջաբանը, որ նվիրված է անմիաբանության նշավակմանը, մինչդեռ բուն երկի մեջ ցույց չեն տրված ո՛չ լուրջ տարաձայնություններ և ո՛չ դրանց վնասակար հետևանքները։

Այսօր մեզ քիչ բան է հայտնի նաև Կապանի ու Արցախի հերոսների տոհմագրությունից։ Տեր-Ավետիսի թոռնորդին՝ համաշխարհային հռչակի հասած հայագետ և բյուզանդագետ Նիկողայոս Ադոնցը, ցավով նկատել է. «Դավիթ-

---

[7] Մ. Մաղաք-Թեոփիլեան, Կենսագրութիւն երեւելի արանց, էջ 185։

[8] Ա. Հովհաննիսյան, Դավիթ-Բեկի պատերազմի Ղափանի պատմագրությունը. «Բանբեր Երևանի համալսարանի», 1970, թիվ 1, էջ 106։

[9] Ա. Հովհաննիսյան, նշվ. աշխ., էջ 106—107։

Բեկի զինակիցները՝ թվով քառասուն, անհայտ են մնացել իրենց ժառանգներով: Բացի մելիք-Փարսադանից, միայն Տաթևի երկու զորավարների սերունդն է ցայժմ հայտնի: Դրանք են՝ Ղիչի և Այտին (Գիչի և Այդին): Գիչունց և Այինունց»[10]: Կարծում ենք այս տեսակետից կարևոր է Դավթի զորավարների՝ Պատմության կցված ցանկը (տե՛ս), որ կազմված է Ղուկաս Սեբաստացու ձեռքով:

Դավիթ-Բեկի ապստամբությունը շատ նշանակալից երևույթ էր հայ ժողովրդի կյանքում, ուստի բնական էր ըսպասել լայն արձագանք: Սերունդները իսկապես անդրադարձել են դրան, աշխատել գրի առնել ու փրկել մոռացումից ապստամբության մասնակիցների, ժամանակակիցների հիշողությունները: Առանձին հետաքրքրություն ունեն այդ՝ դեպքերի արձագանքները հայության ամենալայն զանգվածների մեջ: Շատ հաճախ հարևան կամ հեռավոր գավառների հայերը միմյանց ուրախացնում էին Սյունիքից առած կցկտուր լուրերով, մերթ ցանկալին ևս ներկայացնելով իբրև իրականություն: Այդ լուրերը երբեմն կանխում էին բուն իրադարձությունները, և դրանց հաջորդում էին ապստամբների հաջողությունները: Այդ տեղեկությունները ու զրույցները ամենից ավելի պերճախոս ցուցադրումն են ԺԸ դարի 20-ական թվականների հայության հուսավառ ու ըսպասողական վիճակի, տիրող մթնոլորտի անաղճատ հայելին են:

Որոշ փաստերից երևում է, որ հայերն ուզում էին Դավթին թագավոր կարգել և օծել: Այն օրերին գրված շատ նամակներում խոսվում էր այդ մասին՝ իբրև արդեն իսկ կատարված իրողության: Հ. Ս. Արապյանն իր հրատարակության մեջ ամփոփել է ս. Ղազարի դիվանատանը պահվող բազմաթիվ վավերագրերի համապատասխան հատվածները՝ կապված 20-ական թվականների ազատագրական շարժումների հետ: Այդ նյութի մեջ են նաև Մխիթար Սեբաստացուն ուղղված շատ գրություններ (տե՛ս «Արձագանքներ Դավիթ Բեկի պատերազմներուն ս. Ղազարի Մայր դիվանեն» բաժինը): Այդպիսի մի վավերագիր է Թովմաս վ. Սե-

---

[10] *«Րաֆֆի (Յակոբ Մելիք-Յակոբեան). կեանքը, գրականութիւնը, յիշողութիւններ» (ժողովածու), Փարիզ, 1937, էջ 160։*

բաստացու 1722 թ. հոկտեմբեր 22-ի նամակը, գրված Սեբաստիայից. «Ի Սպահանու անդր Փարվէզն յարեալ ի վերայ Շահին և այլ ուրիշ տաճկի Լէկզի անուանեցեալ շուրջ զԿէնճեյու յարեաւ պատերազմաւ, տիրեալ է ի մօտ ժամանակիս, բայց յետոյ ոմն իշխանազարմ յազգէն Հայոց 4.000 զօրօք կոտորեալ է Լէկզին անդէն, յետոյ Մոսկոֆն մեծաւ բազմութեամբ եկեալ է զՓարվէզին նուաճեալ: Չիշխանն Հայոց ի թագաւոր օծեալ է, իսկ արքայն Պարսից հանդերձ հնազանդելովք քրիստոնեայս արարեալ է, և զայլ բազում բանս լսեմ, յորմէ տաճիկն ի Գարմանս ի կողմ Շահաստանու պատերազմ առնելոց»»[11]: Գրեթե նույնը Մխիթար Սեբաստացուն հաղորդում էր Միքայել վարդապետը 1725 թ. նոյեմբեր 27-ին, Կոստանդնուպոլսից: Այս առնչությամբ հատկապես կարևոր է Գարեգին Սրվանձտյանցի գրառումը «Սյունյաց աշխարհը և Շուշի քաղաք» հոդվածում: Այս լեռնաշխարհի բնակիչները, ասում է մեծանուն գրագետը,— «իրենց միամտության հետ ունին և վեհ սիրտ... իրենց գլուխը միշտ սեգ պահեր են: Պարսկին կատաղի և ամբարիշտ բը[ռ]նության ժամանակը դարձյալ Սյունիք կվայելեր ու կվարեր իշխանություն, փառք, մեծություն, և այս Մելիքություն էր: Այս աշխարհեն էր այն երևելի հաղթող քաջ զորապետն Ռուսաց Մատաթով: Այս աշխարհի Հայն էր, որ իբր հարյուր երեսուն տարի հառաջ փոքրիկ խումբ մը կազմած և իբրև թագավոր կկովեր Հայրենի ազատության վերա: Հիշեցեք Դավիթ Սյունեցին»[12]:

Բնավ պատահական չէր, որ Դավիթ-Բեկի ապստամբությունը լայն արձագանք գտավ առհասարակ ամբողջ Հայաստանում, հայաբնակ բոլոր վայրերում: Վերոհիշյալ նամակներին համահունչ բազմաթիվ գրություններ են ստացվել Վենետիկում Պոլսից ու Կարինից, Էնկյուրիից ու Ամասիայից, Զմյուռնիայից ու Ախլցխայից: Մխիթար անունով ոմն աբեղա ԺԶ դարի մի ձեռագրի մեջ 1722 թ. կարևոր գրառում է կատարել Վանա լճի Լիմ կղզում տեղի ունեցած հանրաժողովի մասին, որի մասնակիցները հավանաբար Վասպուրականի ու շրջակայքի իշխանավորներ էին: Նա վկա-

[11] «Դաւիթ Բէկ կամ Պատմութիւն Ղափանցւոց», էջ 95:

[12] Գ. Սրվանձտյանց, *Երկեր*, *Հ. 2*, *Երևան*, *1982*, *էջ 69*:

յում է, որ ոշտունցի «քաջահամբաւ և արիասիրտ» վարդապետ Ներսեսը ժողովրդին ներկայացրել է համայն հայության «դառնակսկիծ» վիճակը և ցնծագին տեղեկացրել. «Այր մի [յ]երկրէն Սիւնեաց Դասիթ բէկ անուանեալ զորաշարժութիւն արարեալ իցէ վասն հալածելոյ նեղիչք և կըշտամբիչք մեր, **միտս ունենալով ազատագրելոյ արիւնածուփ զաշխարհն Հայաստան**: Արդ, ո՛վ քաջեմիտ և հայրենապաշտ ժողովականք, շրջեցէք գաւառս և կողմանս յերկրին ձերոյ, խրախուսեցէք ժողովուրդք ձեր, որ մրափեալ է ի խոր խաւարի և տանջանաց, զի թոթափեսցեն զլուծ անիրաւաց բռնութեանցս, և յորժամ մեք առաքեսցուք զհրաւէր մարտի, **բառնան ձայն ապստամբութեան ընդդէմ մարդակեր և խաչահալած թշնամեաց մերոց**»[13]:

Սյունիքի ազատագրական շարժումների գրական արձագանքներից ուշագրավ է տեր-Ավետիսին նվիրված ոտանավորը՝ «Ի Սահակէ» բանակապով: Երբ տեր Ավետիսը ասպարեզից հեռացել էր, շատերը նրա հայրենի գավառից խնդրում էին հերոսին վերադառնալ և շարունակել պայքարը: Սահակ քահանայի ոտանավորը նույնպես սրա արտահայտությունն էր, ուր հիշելով տեր Ավետիսի որոշ սխրանքներ և դիտելով, թե «ազգն տանկաց» սարսում է քաջ հոգևորականից, որովհետև հաղթել է նրանց զորքերին, հեղինակը հորդորում է վերադառնալ կռվի ասպարեզ:

Կան նաև ավելի ուշ շրջանում արձանագրված վկայություններ: Ժամանակի ամենակուլ երախից, ինչպես տեսնում ենք, քիչ բան է փրկվել ու հասել մեզ: Եվ այդ քչի մեջ իր ծանրակշիռ բաժինն ունի Ղուկաս Սեբաստացու Պատմությունը, որ Սյունիքում ծավալված իրադարձությունների վերաբերյալ գլխավոր սկզբնաղբյուրն է:

Ղուկաս Սեբաստացին քաջատեղյակ է հայ պատմագրությանը: Նրա երկն ընդհանուր առմամբ հարազատ է հայ մատենագրության ավանդներին, ավելին, երբեմն թվում է, թե նա աշխատել է առաջնորդվել դասական պատմիչների սկզբունքներով, նույնիսկ՝ դարձված-կաղապարներով: Նա սիրում է խոսքի իմաստը խտացնել հոմանիշների կրկնակ

---

[13] *«Տեղեկագիր» (Հաս. գիտ.) 1941, թիվ 5—6, էջ 71—72: Ընդգծված տողը ձեռագրում գրված է կարմրադեղով:*

(և ավելի) գործածությամբ, ինչպես՝ կազմեցան պատրաստեցան, հանեցան հավանեցան, երդմունս երդուան, հատոյց զհատուցումն և այլն: Ընթերցողը առիթներ ունենում է հաճույքով հիշելու հատկապես Ե դարի հայ պատմագրության ինչ-ինչ դրվագներ: Հեղինակի գրչի ամենաշքեղ դրսևորումներից է Հալիձորի մարտի պատկերը, որ հեռավոր աղերս ունի թերևս Մովսես Խորենացու մի նկարագրության հետ: «Իսկ պահապանք պարսպացն,— գրում է Ղուկաս Սեբաստացին,— ի վերուստ անտի հարեալ զնոսա՝ ի մեքենայիցն՝ ի վայր թօթափէին, եւ բազմութիւնն գէշագէշ անկելոց նոցին, իբր վաղահասուկն թզոյ հարեալ ի սաստկութենէ կարկտի՝ զյատակս մեքենայիցն ծածկէին»: Քերթողահայրը (Խոր., Գ, խ), երբ պատմում է Արշակունի Վարազդատ թագավորի (374—378) սխրանքները, գրում է. «…ի բերդ ինչ դիմեալ, ի վերայ պատուարին եօթնտասան այր նետիւք հարեալ՝ վերուստ ի վայր հոսեաց միմեանց զկնի, իբր ի սաստիկ հմն մրրկէ վաղահասուկ թզենեաց (տրբ. թզենից)»:

Բայց պատմագրության (մատենագրության) հետ այսպիսի կապը կարող էր արտահայտվել նաև ենթագիտակցորեն՝ իբրև լավատեղյակության հետևանք: Նույնպիսի աղերսներ կարելի է տեսնել և բանահյուսության հետ: Ժողովրդական վեպի նման, այստեղ ևս գլխավոր հերոսները ընկնում են ո՛չ թշնամու ձեռքով: Նրանցից մեկը մեռնում է բնական մահով (Դավիթ-Բեկ,) մյուսը՝ յուրայինների գնդակից (Մխիթար սպարապետ):

Ինչևէ: Հուսանք, որ ընթերցողը սիրով կընդունի Սյունիքի ազատագրական շարժումների պատմությանը նվիրված այս գողտրիկ մատյանը, նշանավոր հայագետ Լեոյի գնահատմամբ՝ ԺԸ հարյուրամյակի ամենագեղեցիկ գրական գործերից մեկը: Իրեն՝ հեղինակին գրքի առաջին հրատարակիչ Ս. Գուլամիրյանը համեմատել է Վարդանանց հերոսամարտի երգիչ Եղիշեի հետ: Անսպասելի չէ, որ ԺԹ-Ի դարերի գրականության ու արվեստի գործիչները բազմիցս անդրադարձել են Սյունիքի ու Արցախի ազատագրական պատերազմներին, և օգտվելով ամենից առաջ Ղուկաս Սեբաստացու արժեքավոր երկից, ստեղծել են այդ անմահ իրադարձության գեղարվեստական նոր մարմնավորումներ:

Հանրահայտ է Րաֆֆու «Դավիթ-Բեկ» վեպը, որին հաջորդեցին Արմեն Տիգրանյանի համանուն օպերան, վեպեր, շարժանկարներ... Եկող սերունդները նորից ու նորից կանդրադառնան դավիթբեկյան հերոսապատումին, նորովի ու յուրովի կիմաստավորեն նախնիների հայրենաշունչ սխրանքների պատմությունը և, որ առավել կարևոր է, չեն մոռանա պատմության դասերը:



Ներկա հրատարակության համար հիմք է ծառայել Հ. Ս. Արամյանի՝ 1978-ին լույս ընծայած «Դաւիթ Բէկ կամ Պատմութիւն Ղափանցւոց» գիրքը, որի մեջ զետեղված է երկու բնագիր՝ միևնույն վերնագրով («Պատմութիւն Ղափանցւոց»): Դրանք ս. Ղազարի Մխիթարյան մատենադարանի թիվ 620 և 2685 ձեռագրերն են, Ղուկաս Սեբաստացու ինքնագրերը: Երկրորդը փաստորեն սևագիր տարբերակն է, որտեղ կարելի է զանազանել Ստեփանոս Շահումյանի և տեր Ավանեսի պատումը: Հարկ համարեցինք սույն գրքույկի հավելվածում զետեղել նաև այդ բնագիրը, որ ընթերցողին կօգնի որոշ պատկերացում կազմելու պատմության հետ կապված բանասիրական խնդիրների վերաբերյալ:

Բոլոր դեպքերում հատուկ անունները պահպանել ենք նույնությամբ, սակայն, հիմնական բնագրում կատարել ենք աննշան փոփոխություններ. միօրինակացրել ենք հատուկ անունները ու եզրույթները (բացի Դաւիթ Պէկ-ից), միացրել կամ անջատել ենք որոշ պարբերություններ: Բնականաբար այդ ամենն արված է և աշխարհաբարի մեջ:

Պահպանել ենք Հ. Ս. Արամյանի հրատարակության խորագիրը:

**ԱՐՇԱԿ ՄԱԴՈՅԱՆ**

## ԹԷ Ո՞ՐՊԷՍ ԵՒ ՎԱՍՆ Է՞Ր ԵՂԵՒ ՄՈՒՏՆ ԴԱՒԹԻ ՊԷԿԻՆ Ի ՂԱՓԱՆ, ԵՒ ԹԷ ԶԻ՞ԱՐԴ ԵԼԻՆ ՄԻԱՑԱՆ ԸՆԴ ՆՄԱ ԲՆԱԿԻՉՔ ԳԱՒԱՌԻՆ ԵՒ ԸՆԴԴԷՄ ԴԱՐՁԱՆ ԹՈՒՐՔԱՑ

Ի ժամանակին՝ յորժամ զօրացան ազգն Աղուանից Թուրքաց, ի կօղմանս Հնդկաց՝ ի Ղանտահար գաւառին, եւ յարձակեցան յաշխարհն Պարսից՝ ասպատակաւ աւար հարկանել, մինչեւ ի գալ պաշարել նոցա եւ առնուլ զՍպահան քաղաք եւ սատակել զՇահ Հիւսէին արքայն Պարսից, որ եղեւ յամի Տեառն 1721, եւ ի թուին Հայոց ՌՃՀ։

Ի յայս եւ ի սոյն ժամանակի, ի հիւսիսոյ Հայոց՝ Լակզի Թաթարքն ի կողմանս Հայոց եւ Աղուանից արշաւեցին, եւ ըզգիւղորէսն Գանձու եւ Շամախու ասպատակեալ աւար առին, եւ զԱգուլեցին ի Մուսասալէկեան տոհմէ զիշխանն Շամախու ըսպանին, | եւ զամենայն զօրաւոր դիմակացսն սատակեցին, եւ ժողովուրդս երկրին եւ զկանայս եւ զմանկունս գերի վարեցին, զորոց չունիմք յայսմ վայրի մի ըստ միոջէ պատմել։

Եւ կամ թէ զի՞արդ զայսչափ չարիս տեսեալ Հայոց բնակչացն Գուգարացւոց եւ Ուտացւոց՝ ընդդէմ ելին նոցա ի բաց վանել, գունդ կազմեցին, զէն զգեցան, պատրաստեցան ի պատերազմ, ճակատ կազմեցին առ Թարթար գետովն, ընդդէմ ամենայն յարձակելոցն յասպատակութիւն երկրին իւրեանց. որք եւ զանուն առին այսու եւ կոչեցան մեծ Սղնախ մինչեւ ցայսօր։

Եւ թէ ո՞րպէս հարին վանեցին թէ՛ զԼազկին, թէ՛ զՊարսիկն եւ թէ՛ զՕսմանցին՝ ոչ ունիմք գրել. այլ միայն զխմբելոյն Հայոց յեօթնաբերդեան գաւառին Ղափանու եղելոցն ձեռըն արկանեմք պատմել։

Յամին հազարերորդի հարիւերորդի եօթանասներորդի եզերորդի հայկազեան թուականի, յորժամ լուան բնակիչք Եօթնաբերդեան գաւառի Ղափանու զասպատակն եւ զաւերումն Գանձու եւ Շամախու, Հայք եւ Պարսիկք առ հասարակ

## ԹԵ ԻՆՉՈՒ ԿԱՄ ԻՆՉՊԵՍ ԵԿԱՎ ԴԱՎԻԹ-ԲԵԿԸ ՂԱՓԱՆ, ԻՆՉՊԵՍ ԵԼԱՆ ՄԻԱՑԱՆ ՆՐԱՆ ԳԱՎԱՌԻ ԲՈԼՈՐ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ ԵՎ ԸՆԴԴԻՄԱՑԱՆ ԹՈՒՐՔԵՐԻՆ

Այն ժամանակ, երբ Հնդկաստանի կողմերում, Ղանդահար գավառում Թուրք աֆղանների ազգը զորացավ, և նրանք հարձակվեցին Պարսից երկրի վրա, ասպատակելով կողոպտեցին, նույնիսկ եկան, պաշարեցին և գրավեցին Սպահան քաղաքը, սպանեցին պարսից շահ Հուսեին արքային, Տիրոջ 1721-րդ և հայոց թվականության 1170-րդ տարին էր։

Նույն այս ժամանակ լակզի թաթարները Հայաստանի հյուսիսից արշավում են Հայաստանի ու Աղվանքի կողմերը և Գանջայի ու Շամախիի գյուղերն ասպատակելով, կողոպտում նաև Շամախիի իշխանին, որ Ագուլիսի Մուսաբեկյան տոհմից էր, սպանում, բոլոր զինված դիմադրողներին կոտորում և երկրի ժողովրդին, կանանց ու երեխաներին գերի վարում. սրանց մասին չենք կարող այստեղ մանրամասն պատմել։

Եվ թե ինչպես անչափ չարիք տեսած Գուգարքի և Ուտիքի հայ բնակիչները ելան նրանց վարելու, գունդ կազմեցին, զենք կապեցին, պատրաստվեցին մարտի, ճակատ կազմելով Թարթառ գետի շուրջը՝ իրենց երկիրն ասպատակողների դեմ. [բանակատեղին] դրանից ստացավ իր անունը և մինչև օրս կոչվում է Մեծ Սղնախ։

Եվ թե ինչպես արիացան սրանք, հարվածեցին, հեռացրին թե՛ լակզիներին, թե՛ պարսիկներին, թե՛ օսմանցիներին. այս ամենի մասին մտադիր չենք գրելու, այլ միայն կպատմենք Ղափանի յոթնաբերդ գավառում կատարված դեպքերը։

Հայկազյան 1171 թվականին, երբ Ղափանի յոթնաբերդ գավառի բնակիչները լսեցին Գանջայի և Շամախիի ասպատակումն ու ավերումը, բոլոր հայերն ու պարսիկները ան-

խռովեցան, եւ զահի հարեալ սաստնեալ տագնապէին, եւ իբ-
րև ամիսս երկու կամ երեք երթեւեկս առ միմեանս առնել ի
միմեանց կասկածէին. զի զանձինս իւրեանց առ հասարակ
ի խնամոց հանրական ընտանի խնամակալութեան | լքեալս
տեսանէին. վասն այսորիկ քաղաք ի քաղաքէ, ազգ յազգէ, եւ
իշխան յիշխանէ կասկածանս թշնամութեան կրեալ տագնա-
պէին։ Ահա՛ զսոյնպիսի աղէտս չարեաց եւ սոքա կրէին։

Արդ՝ ի սոյնպիսի աւուրս դառնութեան սաստնութեան,
ոմն Ստեփաննոս անուն, ի Հայոց ազգէ, Վանքեցի, ի կողման-
ցըն Կալերու, խորհուրդ ի մտի դնէր՝ անցանել ի Սիսան գա-
ւառ, եւ գնալ հասանիլ յաշխարհն Վրաց, ի քաղաքն Մծխիթ,
առ Շահնաւուզ իշխանաց իշխանն Վրաց, եւ խնդրել ի նմանէ
զայր մի տալ Ղափանու ի զօրագլուխ, եւ հրաման տալ նմա
զօրաժողով լինելոյ եւ զերկիրն ի թշնամեաց պահելոյ. զի
զայս ոչ ոք ի սոսկականացն իւրովի առնել համարձակէր.
ապա եթէ ոք առնէր, ժողովուրդն զնա իբրեւ ապստամբեալ
ի տէրութենէ՝ ի բաց մերժէր։ Այլ իշխանն Վրաց մեծ էր, եւ
զայսպիսի զօրագլուխ կացուցանել նմա անկ էր։ Իսկ Բէ-
րով մարթացի զհայցուածն իւր առաջի իշխանին արժանա-
ւոր ցուցանել, խորհեցաւ տուտ գիրս յանուն յիսուն արանց
տանուտերանց Ղափանու յօրինել, եւ ըստ նմանութեան իւ-
րաքանչիւր կնքոց նոցա զկնիքս քանդակել, եւ զայն գիր նո-
քօք կնքեալ հաստատել։ Եւ օրինակ հայցուածոց հրովարտա-
կին այս ինչ էր. | «Տուր մեզ, տէր, զայր մի՝ լինիլ մեզ զօ-
րապետ, զի հրամանաւ լիցի մեզ այս օրինաւոր, եւ մեք ըղ-
զօրսն հոգամք պատրաստել, եւ նոքօք զգաւառն մեր ի թշնա-
մեաց աներկեւան առնել»։

Եւ գնաց Ստեփաննոս, եւ եհաս ի Մծխիթ քաղաք, յանդի-
ման եղեւ իշխանին Վրաց, եւ գոյժ տուեալ նմա յաղագս նա-
խայիշատակեալ քաղաքացն, պատմեաց նմա եւ զամենայն
վտանգս եւ զխռովութիւնս, զահ եւ զերկիւղ ժողովրդեանն Ղա-
փանու, եւ մատոյց նմա զհրովարտակն՝ զոր արարեալ էր յա-
նուն տանուտերանցն։ Հաճոյ թուեցաւ իշխանին հայցուածն,
զոր յանուն նոցա հայցէր. եւ կոչեալ զԴաւիթ Պէկն Մծխիթա-
ցի, ի հայկազեանս տոհմէ, ետ նմա զիշխանութիւն երթալ
յաշխարհն Սիւնեաց, որ այժմ կոչի Ղափան, զօրաժողով լի-
նել անդ, եւ պահել զերկիրն Հայոց։ Եւ նա յերեսաց իշխա-
նին Վրաց, եւ եկն եհաս յաշխարհն Սիւնեաց յամի Տեառն

հանգստացան և երկյուղի մատնված տագնապում էին և մոտ երկու կամ երեք ամիս չէին համարձակվում միմյանց մոտ գնալ, որովհետև իրենք իրենց բոլոր յուրայինների հոգատարությունից զրկված էին զգում։ Այս պատճառով քաղաք-քաղաքից, ազգ-ազգից, իշխան-իշխանից թշնամանքի կասկածներ ունենալով տագնապում էին։ Ահա այսպիսի չար աղետների էին ենթարկվում սրանք։

Դառնության ու սասանման այս օրերին Հայոց ազգից մեկը, Ստեփանոս անունով, Կալերի կողմերից, վանքեցի, նպատակադրվում է անցնել Սիսան գավառը, գնալ հասնել Վրաց աշխարհը, Մծխիթ քաղաքը՝ վրաց իշխանաց իշխան Շահնավուզի մոտ և խնդրել նրանից՝ Ղափանի երկրին տալ մի մարդ և նրան իրավունք տալ զորք հավաքելու և երկիրը թշնամիներից պաշտպանելու։ Որովհետև այս բանը շարքայիններից ոչ ոք չէր համարձակվում անել, և եթե որևէ մեկն աներ, իբրև տերության դեմ ապստամբած՝ կմերժվեր ժողովրդից։ Իսկ վրաց իշխանը ավագ էր և այսպիսի զորագլուխ նա կարող էր նշանակել։ Եվ որպեսզի կարողանա իր խնդրածը գլուխ բերել, [Ստեփանոսը] մտածեց Ղափանի հիսուն տանուտերերի անունից գրություն հորինել, նրանց կնիքների նմանությամբ կնիքներ պատրաստել և այն գիրը դրանցով կնքել-վավերացնել։ Եվ հրովարտակի բովանդակությունն այս էր. «Մեզ մի մարդ տուր, որ զորապետ լինի, և մենք հոգ տանենք զորք հավաքելու մասին և դրանով մեր հողը թշնամիներից ազատենք և քո հրամանով օրինական լինի»։

Գնաց Ստեփանոսը, հասավ Մծխիթ քաղաքը, հանդիպեց վրաց իշխանին, զուժեց նախահիշյալ քաղաքների ավերման մասին, պատմեց և բոլոր փորձանքներն ու խռովությունները, ահն ու երկյուղը Ղափանի ժողովրդի, և նրան հանձնեց հրովարտակը, որ կազմել էր տանուտերերի անունից։ Իշխանին հաճո թվաց խնդրանքը, և կանչելով մծխիթցի հայ Դավիթ-Բեկին, նրան իրավունք տվեց գնալու Սյունյաց աշխարհը, որ այժմ կոչվում է Ղափան, զորք հավաքելու այնտեղ և Հայոց հողը պաշտպանելու։ Նա հրաժեշտ տվեց վրաց իշխանին, եկավ Սյունյաց աշխարհը հասավ Տիրոջ 1722, Հայոց 1171

1722 եւ ի թուին Հայոց ՌՃՀԱ, եւ բանակեցաւ ի սահմանս Սիսան գաւառին, ի գեղեցիկ դաշտավայրն յայն երեքգագաթեան, որ ի յայլասեռից կոչի Ուչթէփէ։

Եւ ինքն Դաւիթ ազնուական էր, բարեպաշտ, արդարակորով, արիասիրտ, երկայնամիտ խորհրդով, զօրաւոր բանիւք եւ գործովք, տեղեակ գրոց, նախանձայոյզ բարեաց ազգի, եւ վրէժխնդիր | վնասակարաց նորա, սոյնպէս եւ ամենայն հետեւողք իւր. զի իբրեւ ելանէր նա յերկրէն Վրաց, առ նա ժողովէին ամենայն ազգ զօրութեանց յամենայն կողմանց գաւառին, որք լսէին զնմանէ, արք իբրեւ չորեք հարիւրք, որք նեղեալք եւ տառապեալք էին ի դառն ծառայութենէ այլազգեաց, արք՝ որք զանձինս իւրեանց եդեալք էին առ ի ազատ լինելոյ ի լծոյ ծառայութեանն այլազգեաց, արք՝ որոց մինն հալածէր զհազարս, եւ երկուքն՝ զբիւրս։

Արդ՝ զառաջինն հարկանելով էհար Դաւիթ զՂարաչօղլու կոչեցեալ Թուրքն ի յՈւչթէփէն։ Եւ ապա անտի եկեալ բնակեցաւ ի յամուրն որ կոչի Շնհեր, եւ կոչեալ առ ինքն զառաջնորդն Տաթեւու՝ պատմեաց նմա թէ յինչ բանս, յինչ խորհուրդս եկեալ է, եւ ասէ. Ջնջելով ջնջեցից զամենայն այլազգիս յերկրէ աստի յայսմանէ. եւ ժողովեաց առ ինքն զարսն Շնհերու, եւ էհար ասպատակեաց զգիւղորէսն Թուրքաց եւ ժառանգեաց զստացուածս նոցա։

Իբրեւ զայն տեսանէին երեսուն եւ երկու Ճիւանշիր կոչեցեալ ցեղն Թուրքաց, ի միասին գային, ժողովէին, գունդ կազմէին, եւ դիմէին ի վերայ Դաւիթ Բէկին։ Եւ նա ել ընդ առաջ նոցա ի յՈւչթէփէն, եւ ետես ի հեռուստ զզօրսն թշնամեաց զի էին իբրեւ վեշտասան հազար։ Էառ ընդ իւր իբրեւ զչորեքհարիւր ընտիր զօրս, | ի վերայ յարձակեցաւ, յաջ եւ ահեակ կոտորելով խրամատեաց զզօրս նոցա. բայց պատերազմն ոչ շուտով վճարեցաւ, այլ տեւեաց իբր զաւուրս երկուս կամ երիս. եւ յետ երրորդ աւուր՝ ապա ի սպառ էհար եւ վանեաց զնոսա, յուսալով յողորմութիւնն Աստուծոյ, եւ էառ զամենայն ինչս նոցա՝ զզէն, զսուր, զերիվար եւ զամենայն աղխս նոցա։

Յետ այսորիկ առաքեաց նա զՄխիթար սպարապետն իւր ի շէնն որ կոչի Քուրթլար, եւ էհար զայն, եւ էառ զամենայն ստացուածս նոցա։

Արդ՝ լուր եղեւ ամենայն բնակչացն Ղափանու, թէ Դաւիթ Բէկն եկեալ հասեալ է ի թիկունս Հայոց մեծաւ քաջու-

թվականին ու բանակեց Սիսան գավառի սահմաններում, գեղեցիկ դաշտավայրում, Ծռագագաթ բլրի մոտ, որ օտարներն անվանում են Ուչթեփե։

Դավիթն ինքը ազնվական էր, բարեպաշտ, արդարակորով, արիասիրտ, լայնախոհ, խոսքով ու գործով ուժեղ, գրագետ, ազգի բարօրության նախանձախնդիր և աններող՝ նրա թշնամիների հանդեպ։ Իր նման էին և նրա բոլոր հետևորդները։ Եվ երբ նա ելավ Վրաց երկրից, նրա շուրջն էին հավաքվում գավառի բոլոր կողմերից զինակիր տղամարդիկ, որ լսում էին նրա մասին. մոտ չորս հարյուր մարդ, որոնք ճնշված ու տառապած էին օտարների դառն ծառայությունից, այրեր, որոնք իրենց նվիրել էին ազատության՝ օտար լծից և որոնցից մեկը հարյուրների էր հալածում, երկուսը՝ հազարների։

Նախ Դավիթը Ծռաբլուրում հարվածեց ղարաչոռլու կոչված թուրքերին, ապա գնաց բանակեց Շնհեր կոչվող ամրոցում։ Եվ իր մոտ կանչելով Տաթևի առաջնորդին, պատմեց նրան, թե ինչ գործով, ինչ նպատակով է եկել, և ասում է՝ «Այս երկրից իսպառ ջնջելու ենք բոլոր օտարեկրացիներին»։ Եվ խմբեց շուրջը Շնհերի տղամարդկանց, զարկեց-ասպատակեց թուրքերի գյուղերը և գրավեց նրանց ունեցվածքը։

Այս տեսնելով, ճիվանշիր կոչված երեսուներկու թուրքական ցեղերը համախմբված գալիս, հավաքվում, գունդ են կազմում և շարժվում Դավիթ-Բեկի վրա։ Իսկ նա Ծռաբլուրում նրանց ընդառաջ գնալով, հեռվից տեսավ թշնամու զորքերը, որ մոտ տասնվեց հազար էին։ Հետը վերցնելով չորս հարյուրի չափ ընտիր սպառազեն, հարձակվեց նրանց զորքերի վրա՝ աջ ու ձախ հերձելով ու կոտորելով։ Բայց կռիվը շուտ չավարտվեց, այլ տևեց երկու-երեք օր։ Երրորդ օրվանից հետո իսպառ կոտորեց կամ վտարեց նրանց՝ հուսալով Աստծու ողորմածությանը, գրավեց նրանց ունեցվածքը՝ սուր ու զենք, երիվարներ և ամբողջ կայքը։

Այնուհետև իր սպարապետ Մխիթարին ուղարկեց Քուրթլար կոչվող ավանը։ Սա հարվածեց և ավար առավ նրանց ամբողջ ունեցածը։

Երբ Ղափանի բոլոր բնակիչները տեղեկացան, թե Դավիթ-Բեկը մեծ քաջությամբ եկել օգնության է հասել հայերին,

թեամբ, եւ հասանէին առ նա յամենայն կողմանց. զառաջինն դիմէր գալ առ նա Թորոս՝ սակաւ արամբ, են առնոյր ի նմանէ զիշխանութիւն զօրապետութեան, եւ դառնայր ի Զանգուր՝ յերկիրն իւր, ընդ իւր առեալ նաեւ զՊայնտուր զօրավարն Դաւթի։

Յետ այսորիկ գային առ նա զօրօք իւրեանց որդիքն Մաղայ մելիքին Ճիւղայու, որ եւ կոչի հին Ճիւղայ՝ ի Գողթան գաւառին, եւ որդիքն Տիկէնչի մականուանելոյն. եւ սոքա ամենեքեան գային, խառնէին եւ յաւելանային ընդ զօրսն Դաւթի՝ իբրեւ երկուս հազարս արանց զօրաւորաց։

Ընդ այսու ժամանակաւ մելիք ոմն Տաթեւու էր ուրացող, որ յառաջն կոչիւր Դաւիթ, բայց յետոյ անօրինեալ ի հաւատոյս իւր, ինքն եւ ամենայն տուն իւր, կոչեցաւ անուն Պաղրի, եւ որդիք նորա ամենեքեան եղեն Շահ Ղուլի։ Սա իբրեւ զգալն Դաւթի լսէր, զարսն Տաթեւու առ ինքն ժողովէր, ամուրս կանգնէր եւ խորհէր տալ պատերազմ ընդ Դաւթի Պէկին։ Հապա եւ Դաւիթ Պէկն զզօրսն ժողովէր, գունդ կազմէր, գայր հասանէր ի վերայ նորա, զամուրսն պաշարէր, եւ յետ երկուց աւուրց ղայն զբռամբ ածէր, եւ զնա են զամենայն ինչս նորա կալեալ ածէր ի Շնհեր, եւ անդ հրամայէր նմա զաւուրս երկոտասան, ի մէջ եկեղեցւոյն, յանդիման ամենեցուն ասել բարձր ձայնիւ զառածս զայս առակաց՝ թէ «Լոյսն Լուսաւորչի հաւատոյն, վա՜յ ուրացողին». եւ ապա հատանէ զգլուխ նորա. եւ ինքն գայ բնակի ի Տաթեւ։

Ապա հրեշտակս առաքեաց ի Հալիձոր առ տէր Աւետիսն, եւ առ մելիք Փարսադան աներ նորա, եւ ասէ. Եկայք միաբանեցարուք ընդ մեզ, զի ի բաց հանցուք զԹուրքս բնակիչս ի միջոյ. եւ նոքա ոչ եկին։ Եւ յամին երկրորդի, յետ գալստեան Դաւթի ի Ղափան, եւ յաւուրս քառասնորդաց պահուց՝ ի տօնի սրբոյ Լուսաւորչին, ել ի վերայ Զավնդուր երկրին կուսակայն Ղափանու, եւ Փաթալի սուլտանն, եւ ընդ նմա խանն Սեաւ լերին՝ ութ եւ տասն հազարաւ. իսկ զօրքն Հայոց, որք դարան մտեալ էին Նոցա, ի տօնի Յարութեանն Քրիստոսի, գիշերայն զԱստուած յօգնութիւն ինքեանց կոչեցին, յանկարծակի զաղաղակ բարձին, ի վերայ յարձակեցան, հարին կոտորեցին զբազումս ի Նոցանէ, եւ զայլս ի փախուստ դարձուցին։

Ապա յետ այսորիկ եկին մելիք Փարսադան եւ տէր Աւե-

նրա մոտ էին շտապում բոլոր կողմերից։ Առաջինը նրա մոտ է դիմում Թորոսը՝ Ջավնդուր գավառից, սակավաթիվ մարդկանցով և նրանից զորապետության իշխանություն ստանալով՝ վերադառնում է Ջավնդուր՝ իր երկիրը, հետը տանելով նաև Դավթի Պայնտուր զորավարին։ Դրանից հետո նրա մոտ եկան Գողթան գավառի Ճուղա քաղաքի (որ նաև Հին Ճուղա է կոչվում) Մաղա-մելիքի որդիներն իրենց զորքով. և Տիլենչի մականվանյալի որդիները։ Սրանք բոլորը, մոտ երկու հազար զորավոր տղամարդիկ, գալիս, գումարվում են Դավթի զորքերին։

Այս ժամանակ Տաթևում մի մելիք կար ուրացող, որ առաջ կոչվում էր Դավիթ, բայց հետո, երբ հավատը փոխեց, ինքը և ամբողջ ընտանիքը, վերակոչվեց Պաղրի, և նրա բոլոր որդիները դարձան շահ-ղուլի։ Սա երբ լսում է Դավթի գալը, Տաթևի տղամարդկանց հավաքում, ամրություններ է շինում և պատրաստվում պատերազմելու Դավիթ-Բեկի դեմ։ Դավիթ-Բեկը էլ զորք է հավաքում, գալիս հարձակվում է նրա վրա, պաշարում ամրությունները և երկու օր հետո նրան բռնում, նրան ու նրա ամբողջ ինչքը առնում բերում Շնհեր և Հրամայում տասներկու օր եկեղեցում բոլորի ներկայությամբ բարձր ձայնով ասել առածի խոսքը. «Լո՛ւյս Լուսավորչի հավատին, վա՜յ ուրացողին»։ Այնուհետև Դավիթ-Բեկը հատում է նրա գլուխը և ինքը գալիս բնակվում Տաթևում։

Ապա սուրհանդակ է ուղարկում Հալիձոր, տեր Ավետիսի և նրա անձրոջ՝ մելիք Փարսադանի մոտ, և ասում՝ «Եկեք միաբանեցեք մեզ հետ, որ բոլոր թուրքերին վտարենք երկրից»։ Բայց նրանք չեկան։ Դավթի Ղափան գալու երկրորդ տարին, սուրբ Լուսավորչի տոնի քառասնորդաց պահքի օրերին Ջավնդուրի վրա հարձակվեց Ղափանի կուսակալը՝ Փաթալի սուլթանը, և նրա հետ՝ Սև լեռան խանը՝ տասնութ հազարով։ Իսկ հայոց դարանամուտ զորքերը Քրիստոսի հարության տոնին, գիշերով Աստծուն օգնության կանչեցին, հանկարծակի աղաղակ բարձրացրին, հարձակվեցին, հարվածեցին, կոտորեցին նրանցից շատերին և մնացածներին փախստյան մատնեցին։

Այս հաղթությունից հետո մելիք Փարսադանն ու տեր Ա-

տիսն յողջոյն Դաւթի. իսկ նորա բարկացեալ ի վերայ նոցա, ասէ. Կոչեցի զձեզ, եւ ընդէ՞ր ոչ եկիք յօգնութիւն մեզ. եւ հրամայեաց տանիլ զնոսա ի Շնհեր, եւ անդ արկանել զնոսա ի բանտ. եւ էին նոքա զաւուրս երկոտասան ի բանտի անդ։

Եւ դէպ եղեւ յաւուրսն յայնոսիկ Յոհաննէս պետն Գուգարացւոց գալ ի կողմանս յայնոսիկ, յիսուն եւ վեց հազար հայագունդ զօրօք, եւ պաշարեալ զանմատչելի բերդն Որոտնայ. եւ ի չկարելն առնուլ զայն ի Թուրքաց, գայ ի Շնհեր, եւ գտանէ անդ զտէր Աւետիսն եւ զաներ նորա ի կալանս. ազատէ զնոսա եւ առաքէ առ Դաւիթ Պէկն ի Հալի ձոր. եւ ինքն ի Տաթեւ երթայ, գտանէ զգանձն Դաւիթ Պէկին, եւ առեալ զայն՝ դառնայ ի տեղի իւր։ Իսկ Դաւիթ Պէկն ընկալեալ զմելիք Փարսադայն՝ կացուցանէ զնա յիւրում կարգի զօրապետութեան, ի վերայ երկու հարիւր վաթսուն եւ վեց զօրաց, եւ զտէր Աւետիսն՝ ի վերայ չորեք հարիւր քառասնից։

Յետ այսորիկ իբրեւ լսէր Դաւիթ, թէ զօրաժողով է Ասլամաս Ղուլին ի կողմանս Փուխուրութայ լերին, ի բերդն Ջեւու, վաղվաղակի զօրսն գումարէր եւ զայր բնակէր ի Ղարաչիմէն, եւ անտի հրեշտակս առաքէր ի Ջաւնդուր, ի Կալեր, ի Կենաուզն եւ ի Մեղրի, զօրավարացն՝ գալ հասանիլ անդ. եւ եկին հասին վաղվաղակի։

Բայց Թորոս զօրագլուխն ընդդէմ եկաց նմա ի կռիւ. եւ միջնորդ մտեալ ի մէջ երկուցն՝ հաշտեցուցին զնոսա. եւ ժողովեալ զզօրականսն՝ ել գնաց ի վերայ Ասլամազ Ղուլոյն, եւ մատուցեալ պաշարեաց զամուրս նորա, եւ դժուրացաւ ի յառնուլն զայն, զի էր անառիկ եւ բարձրաբերձ յոյժ. այլ յետ բախելոյն զայն աւուրս երկուս, Մխիթար Սպարապետն եւ տէր Աւետիսն գրոհ տուեալ ի վեր խաղացին. իսկ նոքա ի պարսպէ անտի զնոսա ի բաց մերժեցին. բայց տէր Աւետիսն խաբանօք յամուր ելանէր, եւ զոստիկանն ձերբակալէր. եւ յայսմ վայրի զօրքն ամենայն, որք շուրջ էին զբերդաւն, ի պարսպէ անտի ի ներքս զեղանէին, եւ սուր ի վերայ եդեալ՝ զամենեսեան զնոսա առ ետեղ սատակէին. եւ ի նմին աւուր ի յամրոցի անդ կոտորեցին ի Թուրքաց արս չորս հազար, եւ ի սոցանէ մեռան սակաւ ոմանք։

Ապա դարձ արար Դաւիթ, խաղաց գնաց ի Սիսեան գաւառ, եւ կալեալ անդ զիշխանս Թուրքաց՝ կոտորեաց։

վետիսը եկան Դավթին օգնելու։ Իսկ նա բարկանալով նրանց վրա, ասում է՝ Կանչեցի ձեզ, և ինչո՞ւ չեկաք օգնության, և հրամայեց նրանց տանել Շնհեր ու բանտարկել։ Եվ նրանք տասներկու օր բանտում մնացին։

Պատահեց, որ Գուգարաց պետ Հովհաննեսը, գալով այն կողմերը հիսունվեց հազար հայազգի զորքով, պաշարում է անմատչելի Որոտնա բերդը, ջկարենալով ազատել թուրքերից, գալիս է Շնհեր և այնտեղ գտնում տեր Ավետիսին ու նրա աներոջը կալանքի տակ, ազատում է նրանց և ուղարկում Հալիձոր, իսկ ինքը գնում է Տաթև, գտնելով Դավիթ-Բեկի գանձերը և առնելով իր հետ՝ վերադառնում իր երկիրը։ Իսկ Դավիթ-Բեկը մելիք Փարսադանին կարգում է զորապետ երկու հարյուր վաթսունվեցանոց զորքի և տեր Ավետիսին՝ չորս հարյուր քառասունանոց։

Եվ մի օր Դավիթը տեղեկացավ, որ Ասլամազ-ղուլին Փուխուրութի լեռան կողմերում, Ջևու բերդում զորք է ժողովել, ինքն էլ շտապ զորք հավաքեց ու եկավ նստեց Ղարաչիմենում և այնտեղից սուրհանդակներ ուղարկեց Զավնդուր, Կաչեր, Կենավուզ և Մեղրի՝ զորավարներին, որ գան հավաքվեն այնտեղ։ Եվ սրանք անմիջապես եկան հասան։

Թորոս զորավարը կռվի հարցում հակառակվեց նրան, բայց միջնորդներ եղան, որ նրանց հաշտեցրին։ Հավաքելով զորականներին, գնաց Ասլամազ-ղուլիի վրա, մոտենալով պաշարեց նրա ամրությունները, բայց գրավելը դժվար եղավ, որովհետև ամրոցը բարձրաբերձ էր ու անառիկ։ Երկօրյա ընդհարումից հետո Մխիթար սպարապետը և տեր Ավետիսը վճռական գրոհ ձեռնարկեցին։ Իսկ նրանք պարսպից սրանց հետ վանեցին։ Տեր Ավետիսը խորամանկությամբ կարողացավ բարձրանալ պարսպի վրա և ձերբակալել ոստիկանին։ Եվ պարիսպների շուրջը եղած ամբողջ զորքերը լցվեցին պարիսպներից ներս ու սրամարտով կոտորեցին բոլորին։ Այդ օրը նրանք չորս հազար թուրք կոտորեցին, իսկ իրենցից քչերը մահացան։ Հետո Դավիթը շրջվեց, գնաց Սիսան գավառը և այնտեղ բռնելով թուրք իշխանավորներին՝ կոտորեց։

Եւ ի յամին երրորդի, յետ գալստեան իւրոյ ի Ղափան, երթայ պաշարէ զմեծ եւ զանառիկ բերդն Որոտնու, եւ ի տօնի Ծաղկազարդին, որ չորրորդ օր էր պաշարման բերդին, եղեւ անձրեւ յոյժ, ո՜վ սքանչելեացս, եւ ի սաստկութենէ անձրեւին՝ մի կողմն պարսպին ինքնին անկաւ. տոքա իբրեւ զայն տեսին՝ ձայն ետուն, խրախոյս բարձին, ի վերայ յարձակեցան եւ մտին ի ներքս, եւ հարին կոտորեցին զամենայն այլազգիս, եւ առին զբերդն։

Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ առաքել զբազմութիւն զօրաց իւրոց ի վերայ Թուրքացն Պարկուշատայ, եւ ինքեան սակաւուք մնալ ի Սիսան գաւառի։ Ել ի վերայ նորա խանն Նախիջեւանու չորեքտասան հազարաւ. իբրեւ զայն լսէր Դաւիթ՝ զօրաժողով լինէր վաղվաղակի, ի Դարպասայ եւ ի տանէն Սիսանայ գունդ կազմէր, եւ գայր հասանէր նմա ի վերայ գետոյն Նախիջեւանու. եւ անդ իբրեւ ընդ միմեանս բախեցան երկոքին ճակատքն, զօրքն խանին փախստեայ լինէին ի սոցանէ, եւ սոքա զհետ մտանէին նոցա ի յութ եւ տասն ժամէ աւուրն մինչեւ ցքսան եւ միերորդ ժամն վանէին, եւ զբազում վիրաւորս ի նոցանէ դիաթաւալ կացուցանէին։ | Բայց ի քսան եւ երկուերորդ ժամուն փախստեայքն ամենեքեան ի միասին հաւաքեցան եւ ի կրունկս ընդդէմ Հայոցն դարձան. իսկ սոքա իբրև զայն յանդուգն յարձակումն տեսանէին՝ լքանէին, կասէին եւ ի փախուստ դառնային ի նոցանէ մինչեւ ցգետափըն. եւ անդ առ ի ճեպոյն տագնապի, էր որ գետակուր լինէր, եւ էր որ սրոյ ճարակ լինէր, զի պաշարեաց զնոսա սուր թշնամեացն զկնի, եւ յորդեալ գետն առաջի, եւ ոչ գոյր այլ ելք ճանապարհի. ուստի՝ յայնմիկ վայրի ծախեցան ի սոցանէ աւելի քան զհազար այր, մինչեւ ցհասանել գիշերոյն, եւ մնացեալքն փախուցեալ թաքեան ոմն ի վէմս, ոմն ի յայրս եւ ի մացառս. եւ յերկրորդ պահու գիշերոյն եկն էհաս Դաւիթ ի Սիսան, եւ փախստեայքն ամենեքեան եկին ժողովեցան առ նա։

Իր Ղափան գալու երրորդ տարին էր, Դավիթը պաշարեց մեծ ու անառիկ Որոտնաբերդը, և ծաղկազարդի տոնին, որ ամրոցի պաշարման չորրորդ օրն էր, հորդ անձրև տեղաց (ո՞վ սքանչելիք), և անձրևի սաստկությունից պարսպի մի կողմն ինքնիրեն քանդվեց։ Այդ տեսնելով նրանք ձայն տվեցին, խրախույս կարդալով հարձակվեցին, մտան ներս ու կոտորեցին բոլոր օտարեկրացիներին, գրավեցին բերդը։

Եվ դրանից հետո այնպես եղավ, որ Դավիթն իր զորքերի մեծ մասը ուղարկեց Պարկուշատի թուրքերի վրա և ինքը քըչով մնաց Սիսան գավառում։ Նրա դեմ ելավ Նախիջևանի խանը՝ տասնչորս հազարով։ Լսելով այդ մասին, Դավիթը շտապ զորահավաք արեց, Դարպասից ու Սիսան տնից գունդ կազմեց և գնաց նրան հասավ Նախիջևան գետի մոտ։ Այնտեղ, երբ միմյանց բախվեցին, խանի զորքերը դիմեցին փախուստի, և Դավթի զինվորները հետապնդում էին նրանց օրվա տասնութերորդ ժամից մինչև քսանմեկերորդ ժամը, հալածում էին և նրանցից շատերին դիաթավալ վիրավոր դարձնում։ Բայց քսաներկուերորդ ժամին բոլոր փախստականները միասին հավաքվեցին և նորից շրջվեցին հայերի դեմ։ Վերջիններս, տեսնելով այդ հանդուգն հարձակումը, հուսալքվում էին, կանգնում կամ փախչում դեպի գետը, տագնապից շտապելով մեկը խեղդվում էր գետում, մյուսը սրի ճարակ էր դառնում, որովհետև ետևից թշնամու սուրն էր, իսկ առջևից՝ հորդացած գետը, և չկար այլ ելք ու ճանապարհ։ Ուստի այդտեղ սրանցից ավելի քան հազար մարդ զոհվեց մինչև մութն ընկնելը, և մյուսները փախչելով թաքնվեցին քարերի մեջ, անձավներում ու մացառուտներում։ Եվ գիշերվան երկրորդ կեսին Դավիթը եկավ հասավ Սիսան, և բոլոր փախըստականները հավաքվեցին նրա մոտ։

## ԹԷ ԶՈ՞ՐՉԱՓ ԻՆՉ ԱՐԱՐ ԹՈՐՈՍ ԶՕՐԱՊԵՏՆ, ԵՒ ԹԷ Ո՞ՐՊԻՍԻ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՆՔ ԵՂԵՆ Ի ԿՈՂՄԱՆՍ ԶԱՎՆԴՐՈՑ ԵՒ ՄԵՂՐՈՑ

*Ընդ աւուրս ժամանակացն այնոցիկ՝ իբրեւ լսէր Թորոս ի Խորձոր, որ է ի Զավնդուրն, թէ Դաւիթ եկեալ հասեալ է բազում զօրօք ի Սիսան գաւառ, ընդ իւր առնոյր արս իբրեւ երեսուն, եւ գայր հասանէր առ նա. եւ առեալ ի նմանէ զիշխանութիւն զօրապետութեան, վաղվաղակի դարձ առնէր, խաղայր գնայր ի Զավնդուր, եւ զարս տեղւոյն առ ինքն ժողովէր, կարգէր կազմէր զնոսա գունդս գունդս, եւ ի վերայ նոցա կացուցանէր հարիւրապետս եւ յիսնապետս։*

*Եւ դէպ եղեւ յաւուրսն յայնոսիկ հօտ մի ոչխարաց սուլտանին, յորում էին երկու հազար ոչխար եւ երկոտասան հովիւք, գալ արածիլ յերկիրն Զավնդրոյ. եւ զայս իբրեւ լսէր Թորոս, զարս առաքէր՝ երթալ կոտորել զհովիւսն եւ զամենայն զհօտն ածել առ ինքն. եւ արարին այնպէս։ Եւ այս ամենայն եհաս յանկանջս Փաթալի սուլտանին Պարկուշատու, եւ յականջս եղբօր նորին՝ Աղասի խանին, եւ գրեաց վաղվաղակի առ Մահնիշար օղլի Սափի Ղուլոյն օրինակ զայս.*

*Ազդ եղեւ մեզ եւ մեք ինքնին տեղեկացաք թէ զիա՛րդ Հայքըն Զավնդրու ապստամբեալ են ի մէնջ, եւ զսուր վերացուցեալ ընդդէմ Տաճկաց, ուստի, յայս ինչ աւուր՝ երկոտասան հազարաւ ելանելոց եմ ի վերայ բնակչացն Զավնդրու, եւ դու եւս առցես ընդ քեզ զամենայն զօրաւորս Թուրքաց, որք են ի Կենաւուղն, եւ դու այդի, եւ ես աստի ելցուք ի վերայ Հայոցն, եւ ջնջեսցուք զնոսա ի միջոյ։ Այլ նա ոչ էառ յանձն առնել զայն։*

*Եւ ել Փաթալի կուսակալն ի վերայ Զավնդրու՝ երկոտասան հազարաւ։ Իսկ բնակիչքն Զավնդրու իբրեւ զայն լսէին, հարիւր յիսուն վառեալ յԻշկետոյ առաքէին՝ երթալ կալնուլ*

## ԹԵ ՈՐՔԱՆ ԳՈՐԾ ԿԱՏԱՐԵՑ ԹՈՐՈՍ ԶՈՐԱՊԵՏԸ ԵՎ ԹԵ ԻՆՉՊԻՍԻ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ ԵՂԱՆ ԶԱՎՆԴՈՒՐԻ ԵՎ ՄԵՂՐԻԻ ԿՈՂՄԵՐՈՒՄ

Այդ օրերին, երբ Թորոսը լսում է Զավնդուրի խորձորում, թե Դավիթը մեծ զորքով եկել հասել է Սիսան գավառը, իր հետ վերցնում է մոտ երեսուն մարդ և գալիս հասնում նրա մոտ, և նրանից զորապետի իշխանություն ստանալով՝ անմիջապես վերադառնում է, գնում Զավնդուր և տեղի մարդկանց հավաքելով շուրջը, նրանցից գնդեր է կազմում, հարյուրապետներ ու հիսնապետներ կարգում։

Լինում է այնպես, որ սուլտանի ոչխարների մի հոտ՝ երկու հազար ոչխար, տասներկու հովիվ բերում են Զավնդուրի երկիրը՝ արածելու։ Իսկ Թորոսը լսում է այդ մասին, մարդիկ է ուղարկում, որ գնան կոտորեն հովիվներին և ամբողջ հոտը տանեն իր մոտ։ Եվ այդպես արեցին։ Համբավը Պարկուշատի Փաթալի սուլտանին ու նրա եղբայր Աղասի խանին հասավ։ Եվ Փաթալին այսպես գրեց Մահնիշար-օղլի Սափի-ղուլիին.

«Մեզ հայտնի դարձավ, և մենք անձամբ տեղեկացանք, որ Զավնդուրի հայերը ապստամբել են մեզնից, սուր են բարձրացրել տաճիկների դեմ։ Ուստի այսինչ օրը տասներկու հազարով ես կհարձակվեմ Զավնդուրի բնակիչների վրա։ Դու ևս վերցրու քեզ հետ թուրքերի բոլոր զորքերը, որ հենավուզում են, և դու՝ այդտեղից, ես՝ այստեղից գնանք հայերի վրա և մեջտեղից վերացնենք»։ Բայց նա հանձն չառավ այդ անել։

Եվ Փաթալի կուսակալը հարձակվեց Զավնդուրի վրա տասներկու հազարով։ Իսկ Զավնդուրի բնակիչները, այս լսելով Իշկետից հարյուր հիսուն զինված մարդ ուղարկեցին, որ գնան,

զանցս ճանապարհին, զի էր անտառախիտ յոյժ. եւ եկին դարան մտին նոցա անդ։ Արդ՝ զօրքն Թուրքաց իբրեւ անդր հասանէին, դարանամուտքն ստէպ ստեպ զհրացանսն ի վերայ արձակէին, եւ այլ վառեալքն Հայոց ի ճակատ անդր ժամանէին, եւ զբազումս ի նոցանէ առ հեռ սատակէին, եւ զայլսն փախստականս առնէին առաջի իւրեանց մինչեւ ցկողմանս Պարկուշատու. եւ յաւուր յայնմիկ անկանէին ի թշնամեացն արք իբր չորս հազար։

Բայց ի հետեւեալ աւուրն Սափի Ղուլի Լեւազեան երեք հարիւր սպառազէն արամբք նենգութեամբ գայ բնակի ի յԱփկու վանսն, եւ գրէ առ իշխանացն Իքաց աւանին, զի եւ նոքա եկեսցեն որպէս զի զՄանլեւ եւ զամենայն գիւղորայսն Հայոց, որք էին ի կողմանս յայնոսիկ, աւար առեալ աւերեսցեն. բայց Միրզա Սայիլ իշխանն ոչ կամեցաւ զայն։ Եւ զայս ամենայն իմացեալք արքն Մանլեւու՝ առաքեցին արս ի Ջավնդուր, եւ ասեն. Եկ Սափի Ղուլին, զայս ինչ եւ զայս ինչ խորհի առնել։ Իբրեւ զայն լսէր Թորոս զօրապետն, նոյնժամայն վառէր պատրաստէր, եւ հինգ հարիւր վառելովք գիշերայն դիմէր գայր ի վերայ նորա, եւ ի յառաւօտուն յերեքտասաներորդ ժամուն. հասանէր ի յԱփքիս։ Իսկ Սափի Ղուլին իբրեւ զայն տեսանէր՝ փախստեայ գնայր, եւ Թորոսն զհետ մտանէր, եւ հարկանէր ի նոցանէ արս ութսուն։ Եւ ի ժամանակին յայնմիկ՝ հարին կոտորեցին զերիս գիւղս Թուրքաց, եւ առին զամենայն ինչս նոցա եւ դարձան ի Մանլեւ։

Արդ իբրեւ լուր լինէր բանս այս ի Քիս եւ ի յԻքաց, գային ժողովէին ի միասին ամենայն արք բնակչացն Իքացու, եւ զամենայն զկին եւ զորդիս իւրեանց հանէին ամրացուցանէին ի բարձրագոյն գագաթն, որ Հանդէպ աւանին էր, եւ ինքեանք յարձակեալ դային ի վերայ Մանլեւու։ Իսկ Թորոս ընդառաջ լինէր նոցա ի գլխոյ Մանլեւուն, եւ ի դիմի հարեալ՝ զբազումս ի նոցանէ անդանօր սատակէր. եւ զայլսն ի փախուստ դարձուցանէր մինչեւ ցՔիսն, եւ ինքն հրաման տայր զօրացն մի՛ պնդիլ զկնի նոցա, այլ երթալ հարկանել զտունս նոցա եւ այրել, եւ առնուլ զամենայն ինչս նոցա եւ դառնալ։ Եւ իբրեւ կատարեցին՝ դարձան անդրէն ի Մանլեւ։

Եւ եկաց Թորոս ի Մանլեւ աւուրս երիս, եւ անդ կացոյց զՊապ Կալերեցի՝ զորդին Սրապիոնի՝ զօրապետ եւ կառավար ի վերայ երկրին Կենաուզոյ, եւ ինքն դարձ արար գնաց ի Ջա-

բռնեն ճանապարհի անցքերը, որովհետև շատ անտառախիտ էր։ Նրանք եկան այնտեղ դարան մտան։ Երբ Թուրքերի զորքերըն այնտեղ էին հասնում, դարանամուտները սռեպ-ստեպ հրացանները նրանց վրա էին պարպում, և հայոց մյուս զինյալները մարտի դաշտ էին հասնում և նրանցից շատ-շատերին տեղնուտեղը կոտորում, ուրիշներին փախստական դարձնում և հետապնդում մինչև Պարկուշատի կողմերը։ Այդ օրը թշնամիներից ընկնում է շուրջ չորս հազար մարդ։

Բայց հաջորդ օրը Լևազյան Սաֆի-ղուլին երեք հարյուր սպառազեն մարդով նենգությամբ գալիս, բանակում է Աֆկու վանքում և այնտեղից գրում Իքաց ավանի իշխաններին, որ նրանք ևս գան, որպեսզի Մանլևը և հայոց այն կողմերի բոլոր գյուղերը կողոպտելով ավերեն։ Բայց Միրզա-Սայիլ իշխանն այդ չկամեցավ։ Մանլևի այրերը, իմանալով այս ամենը, մարդիկ ուղարկեցին Ջավնդուր՝ ասելով. «Եկել է Սաֆի-ղուլին և այսպիսի բաներ է ուզում անել»։ Երբ այդ լսում է Թորոս զորապետը, անմիջապես զինվում-պատրաստվում է և հինգ հարյուր զինակրով գիշերը դիմում է նրա վրա, առավոտյան ժամը տասներեքին հասնում Աֆքիս։ Իսկ Սաֆի-ղուլին այդ տեսնելով՝ փախուստի է դիմում, և Թորոսը հետապնդում է, կոտորում նրանցից ութսուն հոգու։ Այնժամ կոտորեցին Թուրքերի երեք գյուղ և վերցնելով նրանց ամբողջ գույքը՝ վերադարձան Մանլև։

Երբ այս լուրը հասնում է Քիս և Իքաց, Իքացի բոլոր տղամարդ բնակիչները գալիս, հավաքվում են և իրենց կանանց ու երեխաներին հանում ամրացնում են ավանի դիմացի բարձր գագաթին, իսկ իրենք հարձակվում են Մանլևի վրա։ Թորոսը նրանց ընդառաջ է գալիս Մանլևի բարձունքից և նրանցից շատերին տեղում ոչնչացնում է, ուրիշներին հալածում մինչև Քիս և հրամայում է զորքերին՝ չհետապնդել նրանց, այլ երթալ, քանդել ու այրել նրանց տները, վերցնել նրանց ամբողջ ունեցվածքը և վերադառնալ։ Կատարելով այդ ամենը՝ վերստին դարձավ Մանլև։

Թորոսը Մանլևում մնաց երեք օր և այնտեղ թողնելով կալերցի Պապին՝ Սրապիոնի որդուն, զորապետ և կառավարիչ Կենավուզի երկրի, ինքը դարձավ գնաց Ջավնդուր։ Այնուհե-

վընդուր, Իսկ Պապ զօրաժողով լեալ անդ՝ գայ բնակի ի Կալեր աւանի։

Բայց Սաֆի Ղուլին զգիւղորայսն Թուրքաց, որք էին ի Լեւազու ձորն, խաղացուցանէ ի յՕւրդուար, եւ մնացին միայն չորք գիւղք Թուրքաց ի կողմանս Արձաւաքարին. եւ հրամայեաց Պապ երթալ կոտորել զնոսա .եւ եկին հարին զերիս գիւղսն եւ աւար առին զինչս նոցա։ Եւ ի Թաղամերի էր վաթսուն տուն Թուրքաց. սոքա եկին, լացին, զաղաղակ բարձին առ զօրականսն Հայոց՝ թէ մեք ըստ ամենայնի ամենայն կերպիւ հպատակիմք ձեզ. եւ խնայեցին ի նոսա։

Յետ այսորիկ իբրեւ մի ամիս կամ երկու ի վերայ անցանէր, Սաֆի Ղուլին առնոյր ընդ իւր արս հինգ հարիւր ի յՕւրդուարայ, եւ ի գիշերի միում գայր հարկանէր զերկու գիւղս Հայոց ի Սայիսուն, զարսն կոտորէր, եւ | զկին եւ զորդիս նոցա գերի վարէր ի յՕւրդուար։

Իսկ Դաւիթ Պէկն իբրեւ զայն լսէր, զՄխիթար սպարապետն իւր յառաջ կոչէր, եւ հրաման տայր նմա երթալ սատակել զնոյն վերոյ ասացեալ վաթսուն տունն Թուրքաց ի Թաղամեր. եւ նա արար այնպէս. (եւ զայսու ժամանակաւ՝ Դաւիթ կատարէր զշինուած բերդին որ ի Հալի ձոր)։

Հրաման տայր նաեւ Պապայ զօրապետին երթալ ի Լեւազու ձորն, եւ եթէ գտանիցէ անդէն մնացեալ չէն ինչ Թուրքաց՝ կոտորեսցէ. եւ ըստ հրամանի նորա՝ եւ գնաց հազար հինգ հարիւրով Պապ ի Լեւաղու ձորն, եւ զոչ ոք եգիտ ի Թուրքաց, զի սակաւ ոմանք մնացեալ էին, եւ նոքա եւս փախուցեալ անկան ի յՕւրդուար։ Այլ Պար յուզեալ գտանէ անդէն զբազում ինչս եւ առաքէ զայն ամենայն ի Ջվար աւանն, եւ զպահապանս կացուցանէ անդ. եւ ինքն չուէ գնայ անտի ի կողմանս Վայրիվարա, եւ գտանէ անդէն զերիս տունս, որք ուրացեալք էին զՔրիստոս, զնոսա զամենեսեան կոտորէ եւ առնու զինչս նոցա, եւ դառնայ ի տեղի իւր՝ բազում զանձուք եւ աւարաւ. զի ոչ միայն ի Լեւազու ի գիւղորէիցն Թուրքաց, այլ եւ ի կողմանցն Վայրիվարայ ի Հայոց եհան զբազում ինչս։ Եւ այսպէս զօրականք Դաւթի յամենայն երկիրն Ղափանու շրջէին, յոյզ եւ խնդիր առնէին, եւ ուր ուրեք զԹուրք գտանէին՝ սուր ի վերայ եդեալ սատակէին, մինչեւ բնաւին բնաջինջ առնել զԹուրքն ի Ղափանու։

Ապա իբրեւ լսէր Դաւիթ, թէ զօրաժողով է Ասլամազ Ղու-

և Պապը զորք հավաքելով եկավ բանակեց Կալեր ավանում։ Բայց Սաֆի-ղուլին Լեաղի ձորի Թուրքերին գաղթեցրեց Ուրդուար։ Մնացին միայն չորս Թուրքական գյուղ Արձավաքարի կողմերում։ Եվ Պապը հրամայեց իր զորքին՝ գնալ կոտորել դրանց։ Եկան հարձակվեցին երեք գյուղի վրա և առան նրանց ինչքը։ Թաղամեր ավանում վաթսուն տուն Թուրք կար։ Դրանք եկան, լաց-աղաղակ բարձրացրին հայոց զորականների առաջ և ասացին. «Մենք լիովին հպատակվում ենք ձեզ»,— և սրանց խնայեցին։

Դրանցից մեկ կամ երկու ամիս հետո Սաֆի-ղուլին Ուրդուարից վերցնելով հինգ հարյուր մարդ, մի գիշեր գալիս ավերում է երկու հայկական գյուղ Սայիպունում, տղամարդկանց կոտորում և նրանց կանանց ու երեխաներին գերեվարում Ուրդուար։

Դավիթ-Բեկն այդ լսելով՝ կանչում է իր սպարապետ Մխիթարին և հրաման է տալիս գնալ կոտորել Թուրքերի վերոհիշյալ վաթսուն տունը Թաղամերում, և հրամանը կատարվում է։ Ահա այս ժամանակ Դավիթ-Բեկն ավարտում է բերդի կառուցումը Հալիձորում։

Դավիթը նաև հրամայում է Պապ զորավարին գնալ Լեաղի ձորը, որպեսզի եթե այնտեղ մնացած լինեն Թուրքական բնակավայրեր՝ կոտորի։ Եվ նրա հրամանով Պապը հազար հինգ հարյուրով գնաց Լեաղի ձորը և ոչ մի Թուրք չգտավ այնտեղ, որովհետև մնացած քչերը ևս փախան Ուրդուար։ Իսկ Պապը որոնում, գտնում է շատ ինչք և այդ ամենն ուղարկում է Ջվար ավանը և պահապաններ կարգում այնտեղ, ինքը շարժվում է Վայրիվարի կողմերը։ Այնտեղ գտնում է երեք տուն, որոնք ուրացել էին Քրիստոսին։ Դրանց բոլորին կոտորում է, վերցնում նրանց ունեցվածքը և բազում գանձ ու ավարով վերադառնում իր տեղը, քանի որ ոչ միայն Լեաղի Թուրքական գյուղերից, այլև Վայրիվարի կողմերի հայերից խլեց շատ բան։

Այսպես Դավթի զորականները շրջում էին Ղափանի ամբողջ երկրում, հարցնում, որոնում և որտեղ Թուրք էին գտնում, սրի քաշելով կոտորում էին՝ մինչև բոլորին Ղափանից իսպառ բնաջնջելը։

Ապա Դավիթը լսելով, թե Ասլամազ-ղուլին Փուխուրութի

լին ի կողմանս Փախուրութայ, վաղվաղակի զօրահատոյց լինէր, ի վերայ հասանէր եւ զնոսա զամենեսեան սատակէր անդ, որպէս ի վեր անդր ասացաք. եւ իբրեւ գայր հասանէր Դաւիթ ի Ղարաշիմէն, ընդդէմ ելանէր նմա Թորոս զօրապետն մարտիւ պատերազմի, եւ միջնորդ մտեալ ի մէջ երկուցն հաշտեցուցին զնոսա։ Եւ խաղաց գնաց Դաւիթ ի Հալի ձորն, եւ Թորոսն ի Ջավնդուր, իսկ Պապ ի Կենաւուզն։

Յամի երրորդի՝ յետ գալստեանն Դաւթի ի Ղափան, Թորոս զօրապետն հանդէս արար ամենայն զօրաց իւրոց ի Ջավընդուր, եւ ժողովեաց զամենայն այր զօրաւոր յերկրէ իւրմէ, առ ի գնալ ի վերայ Ուրդուար քաղաքին։ Բայց մելիք Յոանկուլն Որցվանեկ աւանին, որ եւ ասի Կարմիր վանք, որ է ի Պարկուշատ գաւառին, գրեաց առ Թորոսն այսպէս. Ազդ եղեւ Փաթալի սուլտանին վասն քոյ, թէ զօրաժողով ես առ ի գնալ ի վերայ Ուրդուարոյ. սա աւասիկ եւս զօրաժողով է աստ եւ սպասէ, զի յորժամ դու ելանիցես յերկրէդ, նա վաղվաղակի ի վերայ | հասեալ՝ սատակիցէ զերկիրն քոյ. ուստի յոյժ բարւոք արասցես, եթէ նախ եկեսցես ի վերայ Պարկուշատու. Նա եւ զի եւ ի մեզ եղեալ Հայսն Պարկուշատայ քեզ թիկունս առնեմք։

Այլ զայս ամենայն անօրէն մտօք, նենգաւոր խորհրդով գրէր, զոր գրէրն, զի ի ծուղակս թշնամւոյն զնա արկցէ, առ ի հաւատարիմ ցուցանել զինքն սուլտանին, զի մի՛ ի բաց լիցի ի տէրութենէն, (իբր թե զհետ միտեալ իցէ նա Դաւթի եւ զօրականաց նորա). եւ ոչինչ փոյթ եղեւ նմա լինիլն անհաւատարիմ, նենգաւոր, թշնամի Աստուծոյ, եւ մարդկան եւ ազգին իւրոյ եւ ժողովրդեանն մատնիչ եւ սատակիչ, որպէս ի հետագայս ցուցցին առնս այսորիկ թշնամութիւն եւ չարիք։ Եւ հաւատաց Թորոս բանից նորա եւ ել գնաց միամտութեամբ եւ եհաս ի յԵղահորդ, ի սահմանս Պարկուշատու, ինքն եւ ամենայն զօրքն իւր, եւ բանակեցաւ անդ. եւ եկն առ նա Յոանկուլն երկու հազարաւ, եւ եկաց ի մի կողմն զօրացն Թորոսին։ Եւ եհաս անդր Փաթալի սուլտանն, եւ եղբայր նորա՝ Աղասի խանն, բազում զօրօք, քորն որչափ էրն ընդ Թորոսին, կրկնապատիկ եւ եռապատիկ, եւ առաւել եւս, իբրու ութ եւ տասն հազարաւ. եւ իբրեւ ճակատեցան ընդդէմ միմեանց զօրքն սուլտանին եւ զօրքն Թորոսին, զօրքն սուլտանին փախստեայ | լինէին եւ սոքա զհետ լինէին նոցա։

կողմերում զորք է հավաքել, [ինքը ևս] զորահավաք է անում, հարձակվում և նրանց բոլորին կոտորում է, ինչպես վերևում ասացինք։ Եվ երբ Դավիթը գալիս հասնում է Ղարաչիմեն՝ նրա դեմ պատերազմի է ելնում Թորոս զորապետը, և երկուսի միջև միջնորդ լինելով հաշտեցնում են նրանց։ Եվ Դավիթը ելավ գնաց Հալիձոր, Թորոսը՝ Ջավնդուր, իսկ Պապը՝ Կենավուզ։

Դավթի Ղափան գալու երրորդ տարին Թորոս զորապետն իր բոլոր զորքերի հանդես արեց Ջավնդուրում և հավաքեց իր երկրից բոլոր կռվող տղամարդկանց՝ հարձակվելու համար Ուրդուար քաղաքի վրա։ Բայց Պարկուշատի գավառի Երցվանեկ ավանի՝ այսինքն Կարմիր վանքի մելիք Ցռանկուլը այսպես գրեց Թորոսին. «Հայտնի է դարձել Փաթալի սուլտանին քո մասին, թե զորք ես հավաքում Ուրդուարի վրա հարձակվելու համար։ Սա ևս ահա այստեղ է զորք հավաքում, որպեսզի երբ երկրից ելնես՝ անմիջապես հասնելով ավերե քո երկիրը։ Ուստի շատ ճիշտ կանես, եթե նախ գաս Պարկուշատի վրա։ Որովհետև նաև Պարկուշատի հայերս քեզ աջակից կլինենք»։

Բայց այս ամենը նա ծուռ մտքով, նենգությամբ էր գրում, որպեսզի նրան թշնամու ծուղակը գցեր, սուլտանին ցույց տալու համար իր հավատարմությունը, որ չզրկվի իշխանությունից (իբր թե նա հետապնդել է Դավթին ու նրա զորականներին). և նրա համար փույթ չէր Աստծուն անհավատարիմ, նենգավոր և թշնամի լինելը, և իր մարդկանց, իր ազգին ու ժողովրդին մատնող և սպանող, ինչպես հետագայում երևում են այս մարդու թշնամությունն ու չարությունը։ Եվ Թորոսը հավատաց նրա խոսքերին ու ելավ միամտորեն գնաց, հասավ Եղահորդ, որ Պարկուշատի մերձակայքում է, գնաց ու բանակեց այնտեղ։ Եվ եկավ Ցռանկուլը նրա մոտ՝ երկու հազարով և կանգնեց Թորոսի զորքի մի կողմում։ Եվ այնտեղ հասան Փաթալի սուլտանն ու նրա եղբայր Աղասի խանը՝ բազում զորքով, Թորոսը բանակից կրկնակի և եռակի շատ, առավել ևս՝ մոտ տասնութ հազար։ Եվ երբ ճակատեցին իրար դեմ Սուլտանի և Թորոսի զորքերը, սուլտանի զորքը փախուստի դիմեց, և Թորոսը հետապնդեց նրանց։ Այդ

Իսկ անօրէն Ցռանկուլն իբրեւ զայն տեսանէր, զարս զկն
սուլտանին հասուցանէր, եւ ասէ. Զի՞նչ գործէք. զի՞արդ փախ
չիք, դարձարո՛ւք ի կռուանս զի ես ընդ ձեզ եմ. դուք ի յառա
ջոյ եւ ես զկնի սոցա խորտակեսցուք զսոսա. եւ արարին այն
պէս, պաշարեցին զզօրսն Թորոսին յառաջոյ եւ զկնի, եւ ըս
կըսան կոտորել, եւ զԹորոսն սպանին. եւ զերծեալքն ի նո
ցանէ միայն հազար չորս հարիւր այր եկին ի Զավնդուր, և
մնացեալքն ամենեքեան անկան անդ։ Ահա զայսպիսի ան
օրէնութիւնս գործեաց Ցռանկուլն, եւ ոչ այսչափ միայն, ա
եւ առ ի առաւել հաճոյանալ սուլտանին եւ ցուցանել զինք
թէ ոչ է միտեալ զկնի Դաւթի եւ զօրականացն Ղափանացւոց
ուրացաւ նաեւ զհաւատն։

Արդ՝ այս ամենայն իբրեւ այսպէս անցանէր, Փաթալի սուլ
տանն խորհուրդ ի մտի դնէր գալ մտանել ի Զավնդուրն և
կոտորել կորուսանել զբնակիչս նորա։ Բայց Նուպար սպա
րապետն, որ յաջորդեաց Թորոսի, իբրեւ զայն լսէր՝ վաղվա
ղակի հրովարտակ առաքէր առ Պապ զորապետն եւ ասէր
Դու ինքնին գիտես, զի ահա կորեան զորքն մեր, եւ արդ յա
րուցեալ գայ ի վերայ մեր Փաթալի սուլտանն. յօգնութիւ
հասէք մեզ։ Եւ նա վաղվաղակի առաքեաց ի Զավնդուրն եր
կու հազար զօրս ի յօգնութիւն Նուպարին. իսկ Փաթալի սուլ
տանն իբրեւ գիտաց թէ օգնութիւնս արարին ի Կենաւուզ
Նուպարին, դարձաւ ի տեղի իւր։

Եւ ի զօրավարացն Պապայ՝ որք եկին ի Զավնդուր, երկո
զօրավարք ապստամբեցան ի Պապայ՝ վասն խռովութեան ին
եղելոյ ի մէջ նոցա. եւ եկեալ ի Լիջկին աւանն՝ զօրաժողով ե
ղեն, եւ կամեցան ունել զՊապ, եւ նա փախեաւ ի նոցանէ
եւ ասեն՝ Մեք կառավարեսցուք զերկիրս։ Եւ իբրեւ, զայ
լսէ Դաւիթ Պէկն, առաքէ առ նոսա **զԿորկի զօրապետն՝ երկե**
րիւր արամբ. եւ նորա եկեալ հաշտեցուցանէ զնոսա, եւ հնա
զանդ առնէ զնոսա Պապայ, եւ զվերոյ յիշեալ աւարն՝ զոր ա
ռին ի Լեւազու՝ բաժանէ ի մէջն նոցա։

Յետ այսորիկ իբրեւ մի կամ երկու ամիս ի վերայ ան
ցանէր, ի յՈւրդուարայ առ Պապ գուժկան հասանէր, թէ զօրա
ժողով է Թուրքն առ ի գալ եւ աւերել զՂափան։ Յայնժամ իշ
խանքն Կենաւուզու ի միասին գային, խորհուրդ խորհէին՝ հրա
ման տալ, ժողովել զբոլոր մարդիկ գիւղօրէիցն ի յերկուս
գիւղս, ի Կէսն Վանք կոչեցեալ շինէն մինչեւ ցԿալեր, եւ ի

տեսնելով՝ անօրեն Ցռանկուլը մարդիկ է ուղարկում սուլտանի ետևից և ասում. «Ի՞նչ եք անում, ինչո՞ւ եք փախչում, ե՛տ դարձեք, չէ՞ որ ես ձեզ հետ եմ. դուք առաջից, ու ես ետևից՝ կխորտակենք սրանց»։ Այդպես արեցին։ Առջևից ու հետևից պաշարեցին Թորոսի զորքը, սկսեցին կոտորել և սպանեցին Թորոսին։ Նրանցից փրկվածներից միայն հազար չորս հարյուր մարդ եկավ Զավնդուր, իսկ մնացած բոլորն ընկան այնտեղ։ Ահա այսպիսի անօրինություններ գործեց Ցռանկուլը։ Բայց այսքանը քիչ էր, սուլտանին առավել հաճոյանալու և ցույց տալու համար, որ ինքը Դավթի և ղափանցի զորականների համախոհը չէ, ուրացավ նաև հավատը։

Այս ամենը որ այսպես եղավ, Փաթալի սուլտանը մտադրվեց գալ մտնել Զավնդուր, կոտորել ու կողոպտել մատնել նրա բնակիչներին։ Բայց Նուպար սպարապետը հաջորդեց Թորոսին և երբ լսեց այս բանը, շտապ սուրհանդակ հղեց Պապ զորապետին, ասելով. «Արդեն դու ինքդ գիտես, որ կործանվեց մեր զորքը, և հիմա ելել մեզ վրա է գալիս Փաթալի սուլտանը, օգնություն հասեք մեզ»։ Եվ նա անմիջապես Զավնդուր ուղարկեց երկու հազար զորք՝ օգնելու Նուպարին։ Իսկ Փաթալի սուլտանը, տեղեկանալով, որ Նուպարին օգնություն են եկել Կենավուզից՝ դարձավ իր տեղը։

Պապի՝ Զավնդուր եկած զորավարներից երկուսը ապստամբեցին Պապից, իրենց միջև եղած ինչ-որ խռովության պատճառով։ Եվ գալով Լիջկին ավանը, զորաժողով արեցին և ցանկացան բռնել Պապին, իսկ նա փախավ նրանցից։ Ասացին՝ «Մենք կկառավարենք երկիրը»։ Երբ Դավիթ-Բեկը լսեց՝ Կորկի զորապետին երկու հարյուր մարդկանցով ուղարկեց նրանց մոտ, որը և եկավ նրանց հաշտեցրեց ու հնազանդեցրեց Պապին և վերոհիշյալ ավարը, որ խլեցին Լեռզից՝ բաժանեց նրանց միջև։

Սրանից մեկ կամ երկու ամիս անց Ուրդուարից լուր եկավ Պապին, թե թուրքերը զորք են հավաքում՝ գալու ավերելու Ղափանը։ Այնժամ Կենավուզի իշխանավորները միասին եկան, մտածեցին հրաման տալ, գյուղերից բոլոր մարդկանց հավաքել երկու գյուղում, կես Վանք կոչվող շենից, մինչև Կալեր և Կալերից մինչև Մանլև ու Ափքիս։ Խորհուրդն այս

Կալերու մինչեւ ցՄանլեւ եւ մինչև ցԱփքիս. եւ հաստատեցաւ բանս այս ի խորհրդեան եւ արարին այնպէս։

Եւ յետ ամանց | աւուրց՝ Սափի Ղուլին Ուրդուարեցին, որդին Ղազու, եւ որդին Շահիսլամին ութն հազարաւ գային անցանէին ի յԱլանկեզայ սարոյն ի Պուղաքարն։ Եւ իբրեւ այնպէս ղանցանելն նոցա լսէր Պապ, առնոյր ընդ իւր երկուս հազարս եւ ընդառաջ ելանէր. բայց իբրեւ զայն բազմութիւն թշնամեացն տեսանէր, կասէր, զանգիտէր, եւ ի նոցանէ թիկունս դարձուցանէր։ Ապա այնուհետեւ զօրք թշնամեացն համարձակ յառաջ խաղային. գային հասանէին մինչև ցԴաշտուն ասամն, եւ զբոլոր գիւղորէսն քանդէին։ Իսկ ժողովուրդքն գիւղորէից, որք ժողովեալքն էին ի մի (որպէս ի վերոյ ասացաք), ամենեքեան անցին ի Խաչպօլու սարոյն յերկիրն Զավնդուր։ Զայս ամենայն իբրեւ լսէր Դաւիթ, ի սրտմութիւն բարկութեան բրդէր ի վերայ Պապայ. առնոյր վաղվաղակի ընդ իւր երկու հազար ութն հարիւր սպառազէն, խաղայր գայր ի Դաշտունն։ Իսկ Թուրքն իբրեւ զգալն Դաւթի զգային, փախստեայ գնային ի յՈւրդուար։ Եւ եմուտ Դաւիթ ի Դաշտունն, եւ սկսաւ բարկանալ յոյժ ի վերայ Պապայ (մանաւանդ զի այլք եւս չարախօս լինէին զՊապայ), եւ ասէ. Միթէ չիցէ՞ բաւական զի փախեաւ ի պատերազմէ, եւ արդ ոչ եւս կամի գալ առ իս։ Եւ ել գնաց անտի ի Կալեր, եւ կալեալ | անդ զՊապ՝ ածէր ընդ ինքեան. եւ անցեալ ի Խաչպօլու սարոյն, իբրեւ մօտ էին ի յԻշկետ, անդ զխատէր զՊապ եւ աւար առնոյր զինչս նորա։ Ապա յետ երից աւուրց՝ չուեաց գնաց ի յԻշկիտոյ ի դաշտավայրն Կեմանցու։

Արդ իբրեւ լուր եղեւ ի յՈւրդուար՝ թէ Դաւիթ անցեալ է ի Զավնդուր, նլին կազմեցան պատրաստեցան Սափի Ղուլին, որդին Ղազու, եւ որդին Շահիսլամին, եւ առեալ ընդ իւրեանս զօր բազում, իբր երկոտասան հազարաւ գային հասանէին ի կողմանս Կենաուզայ, եւ անցեալք ի յԱլանկեզայ սարոյն՝ զամենայն գիւղորէսն Կենաուզայ այրեցին։ Ապա դուժկան հասանէր առ Դաւիթ վասն այսր ամենայնի։ Եւ նա վաղվաղակի առեալ ընդ իւր արս իբրեւ չորս հազարս՝ եկն եւ բանակեցաւ ի Կալեր, եւ ի յառաւօտուն պահու եհաս ի վերայ հինիցն Թուրքաց, եւ եգիտ զնոսա բանակեալս ի Լիջկին՝ յայնկոյս Ղօզղօզ գետոյն։ Իսկ նոքա անտի իբրեւ տեսին զզօրսն Դաւթի, առ հասարակ հասին կալան զգետափն, եւ

բանը հաստատեց, և այդպես արեցին։

Մի քանի օր անց Ուրդուարցի Ղազի որդի Սափի-ղուլին և Շահիսլամի որդին ութ հազարով եկան, անցան Ալանկեզի սարից դեպի Պուղաքար։ Եվ երբ Պապը լսում է նրանց անցնելը, իր հետ վերցնում է երկու հազար հոգի և ընդառաջ ելնում։ Բայց թշնամիների բազմությունն այդ տեսնելով՝ ընկրկեց, վախեցավ և նրանցից թիկունք դարձրեց։ Այնուհետև թշնամյաց զորքերը համարձակ առաջ շարժվեցին, եկան հասան Դաշտուն ավանը և բոլոր գյուղերը քանդեցին։ Իսկ գյուղերի բնակիչները, որ ի մի էին հավաքված (ինչպես վերևում ասացինք), բոլորը Խաչպոլի սարից անցան Ջավնդուր։ Այս ամենը լսելով, Դավիթը զայրացավ Պապի դեմ և իր հետ վերցնելով երկու հազար ութ հարյուր սպառազեն մարդ, շտապ եկավ Դաշտուն։ Թուրքերը լսելով Դավթի գալը՝ փախան Ուրդուար։

Եվ Դավիթը մտավ Դաշտուն և խիստ զայրացավ Պապի վրա (մանավանդ որ ուրիշները ևս չարախոսում էին նրանից) և ասում է. «Բավական չէ, որ փախել է պատերազմից, այժմ էլ չի կամենում գալ ինձ մոտ»։ Եվ ելավ այնտեղից գնաց Կալեր և այնտեղ բռնելով Պապին՝ տարավ իր հետ։ Անցնելով Խաչպոլի սարից, երբ մոտ էին Իշկետին, այնտեղ գլխատեց Պապին և ավար առավ նրա ունեցվածքը։ Ապա երեք օր հետո Իշկետից ելավ գնաց Կեմանցի դաշտավայրը։

Երբ լուր հասավ Ուրդուար, թե Դավիթն անցել է Ջավընդուր, ելան պատրաստվեցին Ղազի որդի Սափի-ղուլին ու Շահիսլամի որդին և բազմաթիվ զորքով, մոտ տասներկու հազար, եկան հասան Կենավուզի կողմերը և Ալանկեզի սարն անցնելով՝ Կենավուզի բոլոր գյուղերն այրեցին։ Այս ամենի մասին գույժը հասավ Դավթին։ Նա անմիջապես վերցնելով մոտ չորս հազար հոգի, գալիս բանակում է Կալերում։ Առավոտյան ավազակ թուրքերի վրա է հարձակվում և նրանց գտնում է բանակած Լիչկինում՝ Ղողղող գետի մյուս ափին։ Իսկ նրանք երբ այնտեղից տեսան Դավթի զորքերը, հասան

ոչ տային թոյլ անցանել Դաւթի զգետն. ապա սոքա աստի և նոքա անտի մարտ եդեալ կռուէին յառաւօտէ մինչեւ ցերեկոյ. եւ իբրեւ եհաս գիշերն, խոյս ետ Դաւիթ եւ չուեաց գնաց անտի ի Հալի ձոր։

Արդ՝ ի վաղիւ անդր զօրքն Թուրքաց իբրեւ գիտացին թէ Դաւիթ մեկնեցաւ գնաց ի նոցանէ, եւ ոչ ուստեք էր նոցա այնուհետեւ երկիւղ, անցին գնացին ի կողմանս Գուրհամայ եւ սկսան կոտորել եւ ասպատակ հարկանել զգիւղորէսն մինչեւ ի գալ նոցա եւ պաշարել զՄեղրի։ Արդ՝ իբրեւ զայն լսէին որք շուրջ էին բնակիչքն Թուրքաց, գային ժողովէին եւ յաւելանային ի նոսա՝ ի կողմանցն Թավրիզու եւ Սեաւ լերինն, եւ լինէին ութուտասան հազար. ապա մատուցեալ պաշարէին զամուր աւանն Մեղրի։

Իսկ բնակիչքն Մեղրեայ ժողովեցան յերիս թաղս ամենայն արք պատերազմողք առ ի մարտնչիլ ընդ նոսա։ Եւ յաւուրն հինգերորդի, յետ պաշարման նոցա, ամենայն բազմութիւն զօրացն այլազգեաց գրոհ տուեալ՝ մտին կալան զփոքրիկ թաղն։ Եւ որք ի ներքս էին զօրականքն Հայոց՝ վաղվաղակի մատուցեալ ի բաց առին զկամուրջս գետոյն, եւ կալան զանցս նոցա գինու եւ թուփանկօք, զի մի՛ կարասցեն նոքա այլ յառաջ խաղալ, եւ մնացին զօրք թշնամեացն ի փոքրիկ թաղն։ Եւ յայսմ վայրի հրեշտակս արձակեցին Մեղրացիքն ի գաւառն Գուրհամ՝ ի Կալեր, եւ ասեն. Ահա՛ զօրքն Թուրքաց հասին կալան զփոքրիկ թաղն մեր. եւ արդ մեզ եթէ օգնութիւն ոչ հասանիցիք մինչեւ ցաւուրս երկուս, բազմութեան նոցա մեք զդէմ ունիլ ոչ կարեմք։ Եւ իբրեւ եհաս առ նոսա հրեշտակն, ել վաղվաղակի գիշերայն Ստեփաննոս Վրթանեսեան, որ ի տանէն Շահումեան (որ եւ էր նա ինքն փոխանորդ եւ տեղակալ Պապայ զօրապետին) եւ գնաց ի Ջավնդուր գաւառն՝ առ Պայինտուր սպարապետն, եւ ծանոյց նմա զամենայն անձկութիւնս Մեղրացւոցըն եւ զվիշտ վտանգի նոցա։ Արդ՝ նա իբրեւ զայն լսէր, զարըս արձակէր ի Ջավնդուր առ զօրականս՝ վաղվաղակի գալ ժողովիլ առ նա. եւ եկին հասին առ նա, եւ խմբեցան անդ երու հազար այր քաջ սպառազէն՝ ի Ջավնդուր եւ ի Գուրհամայ. եւ ել նոքօք Պայինտուր զօրապետն եւ գնաց բանակեցաւ զայն գիշեր ի Մազրան աւանն, եւ Ստեփաննն ընդ նմա։ Եւ մերձ յառաւօտուն պահու ելին կազմեցան եւ անցին գնացին ի

բռնեցին գետի ափը և թույլ չէին տալիս Դավթին գետն անցնել։ Ապա սրանք այստեղից և նրանք այնտեղից մարտի բռնվելով, առավոտից մինչև երեկո կռվեցին։ Եվ երբ գիշերն իջավ, Դավիթը խույս տալով, գնաց Հասավ Հալիձոր։

Հաջորդ օրը, երբ թուրքական զորքերը տեղեկացան, որ Դավիթը գնացել հեռացել է իրենցից, և այլևս իրենց վտանգ չի սպառնում ոչ մի կողմից, գնացին Գուրհամի կողմերը և ըսկըսեցին կոտորել ու ասպատակել գյուղերը, մինչև եկան ու պաշարեցին Մեղրին։ Այդ լսելով, շրջակա թուրք բնակիչները եկան հավաքվեցին և միացան նրանց՝ Թավրիզի ու Սև լեռան կողմերից, դարձան տասնութ հազար սպառազեն, մոտենալով պաշարեցին Մեղրի ամուր ավանը։

Իսկ Մեղրիի բնակիչները, պատերազմող բոլոր տղամարդիկ, համախմբվեցին երեք թաղերում՝ նրանց դեմ մարտնչելու համար։ Եվ պաշարման հինգերորդ օրը այլազգիների ամբողջ բազմությունը գրոհով գրավեց Փոքրիկ թաղը։ Եվ հայոց զորականները, որ ներսում էին, շատ Հասան, բռնեցին գետի կամուրջներն ու անցքերը՝ զենքով և հրացանով, որպեսզի թշնամիները չկարողանան ավելի առաջ շարժվել, և թշնամու զորքերը մնացին Փոքրիկ թաղում։ Այդ ժամանակ մեղրեցիները սուրհանդակ ուղարկեցին Գուրհամի գավառը՝ Կալեր, ասելով. «Ահա թուրքի զորքերը հասան, գրավեցին մեր Փոքրիկ թաղը։ Եվ եթե հիմա մեզ օգնության չհասնեք երկու օրում, մենք նրանց բազմությանը դիմագրել չենք կարող»։ Եվ երբ սուրհանդակը հասավ նրանց, անմիջապես գիշերով ելավ Ստեփանոս Վրդանեսյանը, որ Շահումյան տնից է, և որ փոխանորդն է ու տեղակալը Պապ զորապետի, գնաց Զավնդուր գավառը՝ Պայինտուր սպարապետի մոտ, նրան տեղեկացրեց մեղրեցիների նեղ վիճակը, նրանց ծանր տագնապները։ Այդ լսելով՝ նա մարդիկ ուղարկեց Զավնդուր՝ զորականների մոտ, որպեսզի արագ հավաքվեն իր մոտ։ Եվ եկան այնտեղ համախմբվեցին երկու հազար քաջ սպառազեն այրեր Զավնդուրից, Գուրհամից, և Պայինտուր զորապետը նրանց հետ ելավ գնաց այն գիշեր բանակեց Մաղրան ավանում, և Ստեփանոսը՝ նրա հետ։ Լուսադեմին պատրաստ-

կողմանցն Ափկու եւ եկին մտին ի Մեղրի։ Իսկ զօրքն Թու
քաց ի բանակէ անտի իբրեւ զբազմութիւն զօրացն Հայ
տեսանէին, ոչ հաւատային թէ յօգնութիւն իցեն նոցա հա
սեալք յայլ ուստեքէ։ Այլ ասէին՝ թէ Մեղրեցիքն կանա
իւրեանց զգեցուցեալք են զզգեստ առնացի եւ զզարդ պատ
րազմի, եւ տուեալ զբազում սուտ դրօշակս ի ձեռս նոցա
առ ի երկեցուցանել զմեզ։

Այլ սոքա մինչչեւ էին հասեալք ի Մեղրի, քաջ եւ արի զօ
քըն Մեղրացւոց գործ քաջութեան ի նմին գիշերի գործեցի
զի անցեալք յանկոյս գետոյն՝ յեղակարծումն ժամու ի մ
բանակի թշնամեացն յարձակէին, եւ զբազումս ի նոցանէ
սուր սուսերի սատակէին, մինչեւ եւ որդին Շահիսլամին երկ
հազարաւ ի յՈւրդովար քաղաք ի փախուստ արկանէին։ Ա
զի սակաւք էին, ոչ կարացին ի սպառ ջնջել եւ անհետս ա
նել զնոսա անտի. դարձան անդրէն ի Մեղրի։ Իսկ օգնական
Հայոց իբրեւ գային եւ ի Մեծ թաղն Մեղրեայ հասանէի
Մեղրացիքն վաղվաղակի նոցա զկերակուր պատրաստէի
Յայնժամ Պայինտուրն որ էր իշխան եւ զօրագլուխ ամենա
զօրուն եկելոյ ընդ նմա, արգելու զնոսա եւ ասէ. Քա՛ւ լի
մեզ ուտել ինչ՝ մինչչեւ իցեմք ողորմութեամբն Աստուծ
վանեալք զթշնամիսն մեր։ Զի խորհուրդ եւ ջան էր նոր
զգործ պատերազմին փութով վճարել, վասն զի աւուրբ մի
յառաջ քան զայն՝ այլազգիքն գրեալք էին յայնկոյս Երա
գետոյն զօրականացն Թուրքաց, գալ յօգնութիւն հասանել նո
ցա. եւ նոքա ի պատրաստի էին բազում գնդաւ գալ ի թիկու
հասանել նոցա։ Ուստի վաղվաղակի Պայինտուրն հանդէս ա
նէր ամենայն | զօրուն եկելոյ ընդ նմա, եւ որք ի յամրի ա
էին, եւ կարգէր կազմէր, եւ զնոսա երիս գունդս բաժանէ
առ իւրաքանչիւր գունդ՝ ութն հարիւր վաթսուն սպառազ
վառեալ։ Ապա զմի գունդն ընդ առաջ հանէր ճակատու թշ
նամեացն, եւ այլ երկու գունդքն ձայն տուեալ խրախոյս բա
ձին, ի վերայ յարձակեցան՝ յաջմէ եւ յահեկէ զօրացն Թու
քաց, եւ ի վեշտասաներորդ ժամէ աւուրն մինչեւ քսան
երեք ժամն՝ ի մէջ առեալ զբազմութիւն զօրացն անօրինաց
հարին կոտորեցին ի նոցանէ աւել քան զմետասան հազա
այր, եւ զայլսն ի փախուստ արկին ի յՈւրդուար, եւ ձերբա
կալ արարին զգլխաւոր նոցա՝ զՀաճի Շափին։ Եւ առին ի նո
ցանէ զամենայն զկահ եւ զկարասի, զզէն, զսուր եւ զամ

վեցին, Ափքիսի կողմերից անցնելով, եկան մտան Մեղրի։ Իսկ թուրքերի զորքերը, երբ իրենց բանակատեղից տեսան հայոց զորքերի բազմությունը, չէին հավատում, թե ուրիշ տեղից օգնություն է հասել, այլ ասում էին՝ «Մեղրեցիները իրենց կանանց տղամարդու շոր և պատերազմի զարդ են հագցրել ու նրանց ձեռքը տվել բազում սուտ դրոշակներ՝ մեզ վախեցնելու համար»։

Սրանք դեռևս Մեղրի չէին հասել, քաջ ու արի մեղրեցիների զորքերը այն գիշեր սխրանքներ գործեցին։ Անցնելով գետի մյուս ափը, անսպասելի ժամի թշնամու բանակի մեջ մտան և նրանցից շատերին սուր-սուսերով խորտակեցին, իսկ Շահիսլամի որդուն երկու հազարով Ուրդուար քաղաքը հալածեցին։ Եվ որովհետև [իրենք] քիչ էին, չկարողացան իսպառ ջնջել և վերացնել նրանց այնտեղից, վերստին դարձան Մեղրի։

Իսկ երբ հայոց օգնականները եկան և Մեղրիի Մեծ թաղը հասան, մեղրեցիները շտապ նրանց համար կերակուր պատրաստեցին։ Այնժամ Պայինդուրը, որ իշխան էր և իր հետ եկած ամբողջ զորքի հրամանատարը, արգելեց նրանց, ասելով. «Մենք ոչինչ չենք ուտի, մինչև Աստծու ողորմածությամբ մեր թշնամիներին չվռնդենք»։ Որովհետև նրա մտածմունքն ու ձգտումը պատերազմի գործն արագ վերջացնելն էր, քանի որ դրանից մեկ օր առաջ այլազգիները գրել էին թուրք զորականներին, որոնք Երասխ գետի մյուս կողմում էին, որ գան հասնեն իրենց օգնության, և նրանք պատրաստ էին բազում գնդերով գալու սրանց օգնության։ Ուստի Պայինդուրը շտապ զորահանդես արեց իր հետ եկած և ամրոցում եղած բոլոր զորքերի, դասդասեց և նրանց երեք գնդի բաժանեց, յուրաքանչյուրը՝ ութ հարյուր վաթսուն սպառազեն մարդով։

Ապա մի գունդն ընդառաջ ուղարկեց թշնամիների դեմ ճակատելու, իսկ մյուս երկու գնդերը ձորի ստորև դարանակալ կարգեցին և վրա հասան թուրքական զորքերին աջից ու ձախից և օրվա առաջին ժամից մինչև իններորդ ժամը իրենց մեջ առան անօրենների զորքերի բազմությունը և նրանցից կոտորեցին ավելի քան տասնմեկ հազար մարդ ու մյուսներին հալածեցին Ուրդուար, իսկ Համի-Տակինին՝ նրանց գլխավորին, ձերբակալեցին։ Նրանցից խլեցին ամբողջ գույքը, զենքը, սրերն ու պատերազմական մյուս գործիքնե-

նայն գործիս պատերազմին, եւ զամենայն զառ եւ զաւ
նոցա. եւ եղեւ ուրախութիւն մեծ ամենայն բնակչացն Ղափ
նու։ | Եւ ի նմին պատերազմի անկան ի տոցանէ Մուրամ խ
լանթարն Լէվազեցի, եւ որդի Հօրեղբօր նորին եւ այլք բ
զումք։ Իսկ զՀաճի Շափին՝ զոր ըմբռնեցին, Պայինտուր զ
րապետն կամեցաւ տանիլ զնա առ Դաւիթ Պէկն, բայց ի
խանքն Մեղրեայ աղաչեցին զնա՝ թողուլ զՀաճին անդ ա
նոսա, եւ նա շնորհեաց նոցա։ Եւ եդին զնա ի կալանս ի տ
տեառն Ներսէսի, եւ զօրականքն ամենեքեան գնային իւր
քանչիւրքն ի տունս իւրեանց։ | Այլ եւ գիւղականքն Գուրճ
մայ, որք վասն ահի հինիցն անցեալք էին յերկիրն Զավնդու
որպէս ի վեր ասացաք, դարձան գնացին եւ բնակեցան իւր
քանչիւրն ի տեղիս իւրեանց։

Յետ այսորիկ իբրեւ մի ամ ի վերայ անցանէր, եղբայ
խանին Երեւանայ զբաղում զօրս կուտէր, եւ երթայր յօգն
թիւն եղբօրն իւրոյ, զի էր պաշարեցեալ նա ի յամուրն Եր
ւան քաղաքի, ի զօրացն Օսմանցւոց։ Արդ՝ սա իբրեւ բազ
զօրօք գայր, ի յՈւրդովար քաղաք հասանէր, ամենայն մա
մետականք քաղաքին ընդ առաջ լինէին նմա, եւ բողոք բա
նային զՀայոցն Մեղրեայ, եւ ասէին, Դատ արա ընդ Մեղր
ցիսն, զի նոքա կոտորեցին կորուսին զամենայն արս քաղ
քիս։ Եւ նա առաքեաց զոմանս ի ծառայիցն ի Մեղրի, երթ
կոչել առ ինքն զոմանս գլխաւոր իշխանացն՝ առ ի գիտ
զպատճառ այնպիսւոյ աղմկին։

Իսկ իշխանքն Մեղրեայ իբրեւ զայն լսէին, տագնապէ
վարանէին ի միտս իւրեանց, ի միասին ժողովէին, խորհու
խորհէին, եւ ասէին. Զի՞նչ արասցուք, զի եթէ երթամք ա
նա՝ վիշտ վտանգի է մեզ, եւ եթէ ոչ եկցուք՝ մեծ վտանգ
մեզ եւ ժողովրդեանս։ Վերջապէս հաւանեցան ոմանք ի նո
ցանէ՝ վասն օգտի հասարակութեան՝ զվտանգ մահուն յանձ
առնուլ, երթալ ընդ սպասաւորսն խանին։ Եւ իբրեւ եկին գնա
ցին ընդ նոսա, եւ հասին ի յՈւրդվար քաղաք, քաղաքացիք
առհասարակ դիմեցին ի վերայ նոցա՝ սպանանել զնոսա
բայց ծառայք խանին ոչ ետուն նոցա թոյլ, մինչեւ ածին կա
ցուցին զնոսա առաջի խանին, եւ քաղաքացիքն զհետ երթա
յին նոցա. եւ իբրեւ յանդիման եղեն խանին, սկսան վերստի
քաղաքացիքն զաղաղակ բառնալ եւ ասել. Դատ արա ընդ մե
եւ ընդ Մեղրացիսդ, զի կորուսին սպառեցին զմեզ։ Եւ ի հայ

րը, նրանց ամբողջ ավարն ու կողոպուտը, և մեծ ուրախություն եղավ Ղափանի բոլոր բնակիչներին։ Այդ պատերազմում սրանցից ընկան լևացցի Մուրում Խալանթարը, նրա հորեղբոր որդին և շատ ուրիշներ։ Իսկ Հաճի-Շափին, որ բռնեցին, Պայինտուր զորապետն ուզեց տանել Դավիթ-Բեկի մոտ, բայց Մեղրիի իշխաններն աղաչեցին նրան, որ Հաճին թողնի այնտեղ՝ իրենց մոտ, և նա զիջեց նրանց։ Նրան կալանավորեցին տեր Ներսեսի տանը, իսկ զորականները գնացին իրենց տները։ Իսկ Գուրհամի գյուղացիները, որ ավազակների ահից անցել էին Ջավնդուրի երկիրը, ինչպես վերևում ասացինք, դարձան գնացին ու բնակվեցին յուրաքանչյուրն իր տեղում։

Մոտ մեկ տարի անց Երևանի խանի եղբայրը բազում զորք հավաքելով գնաց իր եղբորն օգնության, որովհետև նա պաշարված էր օսմանցիների զորքերի կողմից՝ Երևան քաղաքի ամրոցում։ Եվ երբ սա մեծաթիվ զորքով եկավ հասավ Ուրդուար քաղաքը, տեղի բոլոր մահմեդականները նրան ընդառաջ ելան և բողոքելով Մեղրիի հայերից, ասացին. «Դատաստան տուր մեղրեցիներին, որովհետև նրանք կոտորեցին, ոչնչացրին քաղաքիս բոլոր տղամարդկանց»։ Եվ նա ծառաներից մի քանիսին ուղարկեց Մեղրի, իր մոտ կանչելու գլխավոր իշխաններից ոմանց, իմանալու համար այդպիսի աղմուկի պատճառը։

Իսկ Մեղրիի իշխանները լսելով այդ՝ անհանգստացան, երկմտեցին, հավաքվեցին միասին, խորհրդակցեցին և ասում էին. «Ի՞նչ անենք. քանի որ եթե գնանք նրա մոտ՝ մեծ վտանգ է մեզ, չգնանք՝ նույնպես մեծ դժբախտություն է մեզ և ամբողջ ժողովրդին»։ Վերջապես, նրանցից ոմանք որոշեցին հասարակության շահի համար մահվան վտանգը հանձն առնել ու գնալ խանի սպասավորների հետ։ Եվ երբ ելան գնացին նրանց հետ և հասան Ուրդուար քաղաքը, բոլոր քաղաքացիները հարձակվեցին, որ սպանեն նրանց։ Բայց խանի ծառաները նրանց թույլ չտվին, մինչև տարան հասցրին իրենց խանի մոտ, և քաղաքացիները գնացին նրանց հետ։ Երբ խանին ներկայացան, քաղաքացիները նորից սկսեցին աղաղակել և ասել. «Դա՛տ արա մեր և այդ մեղրեցիների միջև, որովհետև կործանեցին, սպառեցին մեզ»։ Եվ խանի հար-

ցանելն խանին զՄեղրացիսն, պատասխանի առնէին նմա՝ թէ մեք ոչ ումեք դոցա մեղաք, եւ զոչ ոք ի դոցանէ ի զուր տարապարտուց սպանաք. այլ դոքա զբազում զօրս կուտեցին, եւ եկին ի վերայ մեր, զբազում գիւղօրէս մեր կոտորեցին կործանեցին եւ ի գերի վարեցին, ապա ի զուր տարապարտուց եկին պաշարեցին զմեզ, եւ կամեցան բնաջինջ առնել զմեզ. եւ մեք առ ի պաշտպանել զմեզ՝ ընդդէմ ելաք դոցա, եւ ի բաց վանեցաք։

Յայնժամ ասէ խանն ցՈւրդովարեցիսն. Ո՞վ հրամայեաց ձեզ ելանել ի վերայ նոցա՝ առ ի կողոպտել եւ կորուսանել զնոսա։ Եւ նոքա ափիբերան եղեն | եւ ոչ կարացին տալ պատասխանի առ այն։ Ապա ասէ ցնոսա խանն. Ո՞վ եղեւ ձեզ առիթ եւ առաջնորդ ելանելոյ ի վերայ նոցա։ Եւ նոքա ասեն. Սափի Ղուլի Լեւաղեցի, որդի Մանիչարի եւ որդին Ղազու Ուրդովարեցի, եւ որդի Շահիսլամին։ Եւ կալեալ խանին զՍափի Ղուլին՝ խրատեաց զնա խստագոյն գանիւք, եւ էառ ի նմանէ զտուգանս։ Եւ զՄեղրացիսն արձակեաց խաղաղութեամբ ի տեղիս իւրեանց, եւ ինքն չուեաց անտի։

Ապա այնուհետեւ սկսան Ուրդովարեցիքն առնել զհաշտութիւն ընդ Մեղրացիսն, եւ խնդրեցին արձակել նոցա զՀաճի Շափին. եւ սոքա եւս խնդրեցին ի նոցանէ արձակել զգերիսըն՝ զորս գերեցին ի գիւղօրէիցն, եւ յանձն առին արձակել զնոսա. յայնժամ Մեղրացիքն գրեցին առ զօրագլուխս Ագուլեցւոց, որպէս զի ընկալցին ի յՈւրդովարեցւոց զեօթանասուն անձինս Հայոց՝ գերեալս ի նոցանէ, եւ ազդ արասցեն [illegible]՝ թէ ընկալան զնոսա, որպէս զի եւ ինքեանք արձակեսցեն զՀաճի Շափին։ Եւ արարին այնպէս. եւ սոքա արձակեցին զՇափին, եւ այնուհետեւ եղեւ խաղաղութիւն ի մէջ նոցա։

[illegible]՝ այս ամենայն լինէր [illegible], յորում Դաւիթ [illegible] Դա[illegible]՝ ի վերայ [illegible] [illegible] [illegible] անդ [illegible] [illegible] առաջնորդ նոցա եւ [illegible]. վեց հազար հեծեալ [illegible], եւ [illegible] հազար [illegible] երեւեալ զայլ [illegible] նոցա։ Եւ մինչ չեւ [illegible] սոքա [illegible]՝ [illegible] Մխիթար [illegible] միայնակ առաջի թշնամեացն, առ որ քարաձիգ լեալ՝ կալան. եւ նա

ցումին մեղրեցիները պատասխան տվին. «Մենք դրանց ոչ մեկի դեմ մեղավոր չենք և դրանցից ոչ մեկին իզուր չենք սպանել, այլ դրանք բազում զորք հավաքեցին և հարձակվեցին մեզ վրա, մեր բազմաթիվ գյուղերը կործանեցին ու կոտորեցին, գերի տարան, ապա իզուր, առանց պատճառի, եկան և մեզ պաշարեցին, ուզեցին բնաջնջել մեզ։ Եվ մենք մեզ պաշտպանելու համար ելանք դրանց դեմ և հեռու վանեցինք»։

Այնժամ խանն ասում է ուրդուարցիներին. «Ո՞վ հրամայեց ձեզ հարձակվել նրանց վրա՝ կողոպտելու և կոտորելու համար»։ Եվ նրանք պապանձվեցին ու չկարեցան պատասխանել։ Ապա խանը նրանց ասում է. «Ո՞վ եղավ ձեզ առիթ ու առաջնորդ՝ նրանց վրա հարձակվելու»։ Եվ նրանք ասում են՝ «Լևազցի Սաֆի-ղուլին, Մանիչարի որդին և ուրդուարցի Ղազի որդին և Շահիսլամի որդին»։ Եվ խանը, բռնելով Սաֆի-ղուլիին, խստագույն գանահարությամբ խրատեց և տուգանք վերցրեց նրանից։ Իսկ մեղրեցիներին խաղաղությամբ թողեց իրենց տեղերը, և ինքը հեռացավ այնտեղից։

Այնուհետև ուրդուարցիք հաշտություն կնքեցին մեղրեցիների հետ և խնդրեցին արձակել հաճի-Շափիին։ Սրանք էլ խնդրեցին արձակել գերիներին, որոնց վարել էին գյուղերից, և հանձն առան արձակել նրանց։ Այն ժամանակ մեղրեցիները գրեցին ագուլեցոց զորագլուխներին, որպեսզի ուրդուարցիներից ստանան հայոց յոթանասուն հոգին, որ գերվել էին նրանցից, և իրենց հայտնեն, որ ստացել են, որպեսզի իրենք էլ արձակեն հաճի-Շափիին։ Եվ այդպես արեցին և սրանք արձակեցին Շափիին, և այնուհետև խաղաղություն եղավ նրանց միջև։

Այս ամենը երբ այսպես եղավ Դավիթ-բեկն իր զորականներին ուղարկեց Ղափանկուլ լեռը՝ թուրքմանների դեմ։ Նրանք այնտեղ հասան, գիշերով հարձակվեցին լեռնաբնակների վրա, խփեցին, կոտորեցին նրանց և խլեցին նրանց ամբողջ ստացվածքը՝ վեց հազար երեք հարյուր ոչխար, չորս հազար հարյուր երեսուն այլ կենդանիներ և վերադարձան։ Ու մինչդեռ հետապնդում էին սրանք փախչողներին, Մխիթար սպարապետը միայնակ հանդիպեց թշնամիներին, և նրան քարկոծելով բռնեցին։ Իսկ նա աղաղակեց և ասում է. «Հասե՛ք

աղաղակեաց եւ ասէ. Հասիք ինձ, զի մատնեցայ ի ձեռս Թուրքաց. եւ առժամայն աճապարեալ տէր Աւետիսն՝ թափեաց զնա ի ձեռաց նոցա։ Եւ առեալ զամենայն զառ եւ զաւարն՝ դարձան Հալի ձոր առ Դաւիթ. որոյ տեսեալ զայն ամենայն՝ ուրախ լինէր։ Եւ յետ տասն աւուր դարձեալ առաքէր զնոսա ի լեառն Կասպելու՝ ի վերայ Թուրքմանաց. եւ գընացին հասին անդ, եւ հարին զնոսա, եւ առին զինչս՝ նոցա, եւ զանասունս ինն հարիւր, եւ դարձան։

Դարձեալ ընդ աւուրսն ընդ այնոսիկ՝ ցեղ ինչ Թուրքացն Պարկուշատայ գային ի լեռնակողմանս Ղափանու վրանօք բնակէին վասն խստութեան օդոյ երկրի իւրեանց, որպէս եւ յայլ ամենայն ժամանակս ամարայնոյ առնէին։ Արդ՝ իբրեւ ... լսէր Դաւիթ Բէկն, վաղվաղակի զՄխիթար սպարապետն իւր հազար ութ հարիւր վառելովք ի վերայ նոցա առաքէր. եւ նա երթայր յուղէր եւ հետամուտ լեալ գտանէր զընոսա ի վերին կողմանս Կարմիր Վանք կոչեցեալ ասանին, եւ ի վերայ հասանէր նոցա յառաւօտու պահուն, հարկանէր եւ առեալ զամենայն ինչս նոցա եւ զանասունս՝ դարձաւ։ Բայց խանն Պարկուշատայ բազում զօրօք աճապարէր ընդ առաջ ելանել ի կողմանս Խոտանանու. իբրեւ զայն տեսին զօրականքըն Հայոց, սաստկացուցին ի վերայ նոցա պատերազմն՝ մինչեւ յետս նահանջեցին զնոսա անտի, եւ սկսան հարկանել զվիրաւորս ի նոցանէ։ Այլ Մխիթար սպարապետն, վասն զի էր խռովեալ ընդ տեառն իւրոյ Դաւթի, ... իբրեւ սկսան սոքա հարկանել զթշնամիսն եւ վանել, հրամայեաց Մխիթարն զօրավարացն յետս կալ ի պատերազմէն, եւ արարին այնպէս. բայց որք յառաջագոյն զօրքն էին, իբրեւ տեսին թէ ... դարձան յետս, համարեցան թէ ի փախուստ դարձան ի պատերազմէն, եւ սկսան իւրաքանչիւրքն խոյս տալ ելանել ի պատերազմէ։ Իսկ զօրք թշնամեացն իբրեւ զայն շփոթ տեսանէին, ընդդէմ դառնային սոցա, ի վերայ յարձակէին, հասանէին հարկանէին ի սոցանէ երեք կամ չորեքհարիւր այր, եւ զոմանս ի նոցանէ կենդանի կալեալ մեծաւ տանջանօք ի Պարկուշատ ածէին. ընդ որս էր եւ Ստեփանոս Ճհումանեան (sic)։ Եւ իբրեւ զայն լսէր Դաւիթ, ի սրտամտութիւն բարկութեան բրդէր ի վերայ Մխիթարայ, եւ հրաման տայր զկառափն հարկանելոյ. բայց միջնորդ լեալ մեծամեծացն՝ հազիւ դարձուցին զվճիռ մահու նորա, եւ սուտ

*ինձ, որովհետև մատնվել եմ թուրքերի ձեռքը»։ Եվ փութալով, տեր Ավետիսն անմիջապես ազատեց նրան թշնամիների ձեռքից և վերցնելով ամբողջ առն ու ավարը, դարձան Հալիձոր, Դավթի մոտ, որը տեսնելով այդ ամենը, ուրախացավ։ Եվ տասն օր անց նրանց նորից ուղարկեց Կասպել սարը՝ թուրքմանների վրա։ Եվ գնացին հասան այնտեղ և խփեցին նրանց, առան նրանց գույքը և ինն հարյուր անասուն ու վերադարձան։*

*Դարձյալ այդ օրերին Պարկուշատի թուրքերի մի ցեղ գալիս, վրաններով բնակվում է Ղափանի լեռնակողմերում, ինչպես անում էին միշտ ուրիշ ժամանակներ՝ ամռանը, իրենց բնակավայրի տոթի խստության պատճառով։ Երբ Դավիթ-Բեկն այդ լսեց, անմիջապես իր սպարապետ Մխիթարին հազար ութ հարյուր զինյալներով նրանց վրա ուղարկեց, և նա գնալով փնտրեց ու գտավ նրանց Կարմիր վանք կոչված ավանի վերին կողմերում և հարձակվեց նրանց վրա առավոտյան, խփեց և առնելով նրանց ամբողջ ինչքը և անասունը՝ վերադարձավ։ Բայց Պարկուշատի խանը բազում զորքով շտապ ընդառաջ է գալիս Խոտանանի կողմերում։ Հայոց զորականները, երբ այդ տեսան, սաստկացրին նրանց դեմ կռիվը, մինչև ստիպեցին նրանց նահանջել, և սկսեցին նրանց վիրավորներին խփել։*

*Բայց քանի որ Մխիթար սպարապետը նեղացած էր իր տեր Դավթից, ուստի, երբ սրանք սկսեցին կոտորել թշնամիներին և վարել, Մխիթարը հրամայեց զորավարներին հետ գալ պատերազմից, և այդպես արեցին։ Սակայն առաջամարտիկները, տեսնելով, որ ետևում եղած զորքը հետ դարձավ, մտածեցին, թե նրանք փախչում են պատերազմից, և սկսեցին բոլորը խույս տալ մարտից։ Այդ իրարանցումը տեսնելով՝ թշնամիների զորքը դարձավ սրանց դեմ. հարձակվեցին, հասան սպանեցին սրանցից երեք կամ չորս հարյուր մարդ, իսկ նրանցից ոմանց կենդանի բռնելով՝ մեծ տանջանք [պատճառելով] Պարկուշատ հասցրին, որոնց մեջ էր և Ստեփանոս Շահումյանը։ Երբ Դավիթն այս լսեց, սաստիկ բարկացավ Մխիթարի վրա և հրամայեց գլուխը կտրել։ Բայց մեծամեծները միջնորդեցին և դժվարությամբ փոխեցին մահ-*

ջառ Դաւիթ ի վերայ քաջին Ստեփաննոսի, եւ այնքան զօրա-
ցըն ի զուր տարապարտուց կորուսելոյ։

Իսկ Ստեփաննոս իբրեւ ածեալ եղեւ ի Պարկուշատ, գտա
անդ ի տան խանին բարեսէր ոմն Թուրք, որ զթացեալ ի նա
փախոյց. եւ իբրեւ ազդ եղեւ Դաւթի զերծումն նորա՝ մխի-
թարեցաւ ի սգոյն։

Էր ընդ կոտորեալսն նաեւ Պալի զօրավարն՝ որդին մելի
Փարսադանի, որոյ զգլուխն հատեալ, ընկեցեալ էին ի բաց
զնա մերձ ի խոտանան, բայց ոչ զբոլոր պարանոցն, այլ մին-
չեւ ցկէս ուլանն. ուստի յետ սակաւուց, իբրեւ ուշն ի վերա
զայր՝ կալեալ զգլուխն ի վերայ իւր, երթայր մտանէր ի մա-
ցառս վայրեացն մինչ ցմութ գիշերոյն, եւ ի գիշերի յուղ
անկեալ գայր, եւ յետ երից աւուրց ի Հալի ձոր հասանէր։ Ե
եղեւ սքանչացումն յոյժ ամենայն տեսողաց՝ զի ոչ մեռաւ
այլ կենդանի է մինչեւ ցայսօր, եւ է մելիք ի Հալի ձոր։

վան վճիռը։ Եվ սուգ արեց Դավիթը քաջ Ստեփանոսի և իզուր կորսված այնքան զորքի համար։

Իսկ Ստեփանոսը, երբ տարվեց Պարկուշատ, այնտեղ խանի տանը հանդիպեց մի բարեսեր Թուրքի, որ գթալով նրան՝ փախցրեց։ Եվ երբ Դավիթը տեղեկացավ նրա ազատվելու մասին, մխիթարվեց սգից։

Սպանվածների մեջ էր նաև Պալի զորավարը՝ մելիք Փարսադանի որդին, որի պարանոցը կիսով չափ կտրել, [իրեն] գցել էին մի բաց տեղ, խոտանանի մոտ։ Բայց [կտրել էին] ոչ թե ամբողջ պարանոցը, այլ ողի կեսը միայն։ Ուստի քիչ անց ուշքի գալով, ձեռքով գլուխն իր վրա բռնած՝ գնաց մըտավ վայրի մացառների մեջ, մինչև օրվա մթնելը և գիշերը ճանապարհ ընկնելով եկավ ու երեք օր հետո հասավ Հալիձոր։ Եվ բոլոր տեսնողները շատ զարմացան, որ չէր մահացել, և կենդանի է մինչև օրս և մելիք է Հալիձորում։

## ԹԷ ԶԻԱ՞ՐԴ ՕՍՄԱՆՑԻՆ ԵԿՆ ԵՒ ԵՄՈՒՏ Ի ՂԱՓԱՆ, ԵՒ ԹԷ ԶՈ՞ՐՔԱՆ ՄԱՐՏՍ ՊԱՏԵՐԱԶՄԱՑ ԵՏՈՒՆ ԸՆԴ ՆՈՍԱ ԴԱՒԻԹ ԵՒ ՔԱՋ ԶՕՐԱԿԱՆՔ ՆՈՐԱ. ԵՒ ԹԷ ԶՈ՞ՐՔԱՆ ՄԵԾԱՄԵԾ ՅԱՂԹՈՒԹԻՒՆ ԱՐԱՐԻՆ Ի ՆՈՍԱ։

*Յամի Տեառն 1724ին, եւ ի թուին՝ Հայոց ՌՃՀԳին, Սուլտան Ահմէտն Օսմանցւոց, որ բռնակալեալ ունէր ի պարսկական ծոցոյն ովկիանու մինչեւ ցԵգիպտոս եւ ցԼիբիայ, եւ անտի մինչեւ ցԼիւրիկէ, եւ մինչեւ ցեզր ծովն Պոնտոսի, եւ զմեծ մասն Հայոց, եւ զայլ բազում աշխարհս եւ զթագաւորութիւնս եւ զիշխանութիւնս եւ զաշխարհս նոցա, իբրեւ լսէր զվտարումն Պարսից արքային ի հայրենի աթոռոյն, խորհեցաւ զիարդ եւ իցէ պատճառանօք յինքն գրաւել զտէրութիւնն զայն։ Ուստի հրաման տայր իշխանի զօրուն ելանել, զօրաժողով լինիլ յամենայն աշխարհաց, եւ երթալ հասանիլ ի վերայ Պարսից, եւ առնուլ զքաղաքս նոցա. եւ ել նա ըստ հրամանի արքային՝ անթիւ անհամար զօրօք ի կողմանս մեծին Հայոց, որ ի վիճակին Պարսից, եւ ուր ուրեք հասանէին՝ ի սուր սուսերի սատակէին զամենայն դիմակացս իւրեանց, եւ զօրքն ամենայն դառնային բազում աւուրս ամ յամէ, մինչ յաղթացան փարթամացան եւ լցին զամենայն քաղաքս եւ զգիւղս իւրեանց ի բազմութենէ աւարաց եւ գերեաց՝ ի Հայոց եւ ի Պարսից. բայց ո՞ կարէ պատմել զաղէտս մարդ եւ տղայոց ի ձեռաց անօրէն գերչացն, եւ զնոցին հարց եւ եղբարց անողորմ կոտորած։*

*Արդ՝ սոքա իբրեւ այսպէս զօրացան ի կողմանս յայնոսիկ, եւ զմայրաքաղաքն Երեւանու յետ բազում ժամանակաց պաշարմանն առին, եւ զամենայն բնակիչս ի սուր սուսերի մաշեցին։ Ապա յամի Տեառն 1726ին, եւ ի թուին Հայոց հազար հարիւր եօթանասուն եւ հինգերորդին, անթիւ անհամար զօ-*

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՕՍՄԱՆՑԻՔ ԵԿԱՆ ԵՎ ՄՏԱՆ ՂԱՓԱՆ, ԻՆՉՔԱՆ ՄԱՐՏԵՐ ՄՂԵՑԻՆ ՆՐԱՆՑ ԴԵՄ ԴԱՎԻԹՆ ՈՒ ԻՐ ՔԱՋ ԶՈՐԱԿԱՆՆԵՐԸ, ԵՎ ԹԵ ՈՐՔԱՆ ՄԵԾԱՄԵԾ ՀԱՂԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՏԱՐԱՆ ՆՐԱՆՑ ԴԵՄ

*Տիրոջ 1724 և Հայոց 1173 թվականին օսմանցիների սուլտան Ահմետը, որ բռնությամբ տիրում էր Պարսից ծոցից մինչև Եգիպտոս և Լիբիա, և այնտեղից մինչև Լյուրիկե ու մինչև Պոնտոսի ամբողջ ծովը և Հայաստանի մեծ մասը և այլ բազում ազգերի, թագավորություններ և իշխանություններ ու նրանց երկրները, երբ լսեց պարսից արքայի վտարվելը հայրենի գահից, մտածեց ինչ հնարով լինի յուրացնել այդ տերությունը։ Ուստի հրամայեց զորապետին ելնել, զորաժողով անել բոլոր աշխարհներից և գնալ հարձակվել Պարսկաստանի վրա, զավթել նրանց քաղաքները։ Արքայի հրամանով նա անթիվ ու անհամար զորքով հասավ Մեծ Հայաստանի [այն] կողմերը, որ Պարսկաստանի ձեռքին էր։ Եվ որտեղ պատահեին՝ սրով ու սուսերով կոտորում էին իրենց դիմադրողներին, և բոլոր զորքերը վերադառնում էին հաբուստ ավարով՝ տարեցտարի, մինչև հղփացան, հարստացան և իրենց ամբողջ քաղաքներն ու գյուղերը լցրին ավարներով ու բազմաթիվ գերիներով՝ հայերից ու պարսիկներից։ Բայց ո՞վ կարող է պատմել մայրերի ու զավակների՝ անօրեն զավթիչներից կրած աղետները և նրանց հայրերի ու եղբայրների անողորմ կոտորածը։*

*Սրանք որ այսպես զորացան այն կողմերում և Երևանի մայրաքաղաքը երկարատև պաշարումից հետո գրավեցին, ամբողջ բնակչությունը սրի մատնեցին։ Ապա Տիրոջ 1726 և Հայոց 1175 թվականին անթիվ-անհամար զորքով Սյունյաց*

րօք մխեցան յաշխարհն Սիւնեաց, եւ հասին պատեցին ի չո-
րից կողմանց զերկիրն Դաւթի, զեօթնաբերդ գաւառն Ղափա-
նու։ Յայնժամ ամենայն բնակիչք գաւառին առհասարակ խռո-
վեցան սասանեցան, թողին լքին զԴաւիթ, եւ գնացին մտին
ընդ լծովն Օսմանցւոց։ Եւ մնաց Դաւիթ միայն եօթնեւտասն
սպառազէն արամբ ի յանապատն Հալի ձորոյ, ուր կանգ-
նեալ էր զանառիկ բերդն. ընդ նմա էին նաեւ երեք եպիս-
կոպոսունք եւ երեքտասան քահանայք, զհետ գնացին նաեւ
Տէր Աւետիսն եւ Մելիք Փարսադան՝ սակաւ ոմամբ, զի զօր-
քըն ամենեքեան թօթափեցան ի նոցանէ։ Բայց Դաւիթ յայսմ
ամենայնի ոչ լքաւ, ոչ կասեցաւ ի խորհրդոցն, ոչ զանգիտեաց
ի բազմութենէ բարբարոսացն, ոչ դադարեցաւ ի քաջագոր-
ծութեանցն եւ ոչ յուսահատեցաւ յողորմութենէ Աստուծոյ։ Այլ
արիաբար զբերդն ամրացուցանէր, զհամբարս բերդին առ-
նէր, զզօրականս առ ինքն ժողովէր եւ բազմացուցանէր, եւ
զամենակալն զԱստուած յօգնութիւն ինքեան կոչէր։

Արդ՝ յամսեանն իններորդի յետ գալստեան Օսմանցւոց ի
Ղափան, որ այն հինգերորդ ամ էր գալստեանն Դաւթի, ե-
կին հասին ի Ղափան ի Սուլտան Ահմէտէն՝ Պէքիր փաշայն,
եւ Արապ Ալի փաշայն՝ բազում զօրօք, ընդ ինքեանս առեալք
նաեւ զՓաթալի խանն Պարկուշատու. յետ այսորիկ հրաման
տային ի տեղեաց տեղեաց աշխարհին ամենայն զօրաւորաց
Հայոց եւ Թուրքաց գալ ժողովիլ անդր. եւ եկին հասին առ
նոսա յամենայն կողմանց զօրքն Թուրքաց՝ ընդ ինքեանս
առեալք նաեւ զզօրսն Հայոց ի Գողթան գաւառէն, ի յԱգուլիս
քաղաքէն, ի յՕրդուաբադայ, ի Փիսիանայ, ի Պարկուշատայ, ի
Ղափանու, ի Մեղրեայ, ի Զանգըրու, նաեւ զԹուրքսն Ղարա-
չօղլու, եւ զնոսա որք բնակեալք էին ի Սեաւ լերինս։ Եւ զի
մի՛ այսպէս [illegible] բանս այս, [illegible] ի բազմաց ասա-
ցուք, եղեն հրոս վաթսուն կամ եօթանասուն հազար, եւ
առաւել եւս բազում յոյժ, մինչեւ լինել բազմութիւն հեծելոց
եւ հետեւակաց նոցա զդաշտս եւ զլերինս։ Եւ հանդէս արա-
րեալ ամենայն զօրացն, կարգեցան պատրաստեցան դիմե-
ցին գալ ի վերայ Դաւիթ Պէկին, եւ եկին բանակեցան յայն-
կոյս գետոյն Հալի ձորոյ, ի յերեքտասներորդում աւուր քա-
ռասներորդաց պահոցն։ Իսկ որք ընդ Դաւթի էին զօրք, զայն ա-
հագին բազմութիւնն յորժամ տեսանէին զարհուրէին, եւ բա-
զումք ի նոցանէ երթային առ փաշայն եւ անձնատուր լին-

աշխարհը մտան և հասան, բոլոր կողմերից շրջապատեցին Դավթի երկիրը՝ Ղափանի յոթնաբերդ գավառը։ Այնժամ գավառի բոլոր բնակիչները խառնվեցին, խուճապի մատնվեցին, լքեցին Դավթին և գնացին օսմանցիների լծի տակ մտան։ Եվ Դավիթը մնաց միայն տասնյոթ սպառազեն այրերով՝ Հալիձորի մենաստանում, ուր կառուցել էր անառիկ ամրոցը։ Նրա հետ էին նաև երեք եպիսկոպոս, տասներեք քահանա, ինչպես և տեր Ավետիսն ու մելիք Փարսադանը՝ սակավաթիվ մարդկանցով, որովհետև ամբողջ զորքը հեռացավ նրանցից։ Սակայն Դավիթն այս պայմաններում չհուսալքվեց, չընդհրաժարվեց իր ծրագրերից, չվախեցավ բարբարոսների բազմությունից, չդադարեց սխրանքներ գործելուց և Աստծու ողորմածության հույսը չկտրեց, այլ արիաբար շարունակեց ամրացնել բերդը, պատրաստել պահեստները, զորականներին հավաքել շուրջը, սովարացնել [բանակը] և ամենակալ Աստծուն իրեն օգնության կանչել։

Օսմանցիների Ղափան գալու իններորդ ամսին, որ Դավթի գալստյան հինգերորդ տարին էր, սուլտան Ահմետի կողմից եկան Ղափան հասան Պեքիր և Արապ-Ալի փաշաները, բազմաթիվ զորքով, իրենց հետ առած նաև Պարկուշատի Փաթալի խանին։ Սրանից հետո նրանք հրաման արձակեցին, որ երկրի տարբեր կողմերից հավաքվեն հայոց և թուրքերի բոլոր զինակիրները։ Եվ եկան հասան նրանց մոտ բոլոր կողմերից թուրքական զորքերը, իրենց հետ բերելով նաև հայկական զորքեր Գողթան գավառից, Ագուլիս քաղաքից, Ուրդուարից, Փիսիանից, Պարկուշատից, Ղափանից, Մեղրիից, Ջավնդուրից, այլև ղարաչոռլու թուրքերը և նրանք, որ բնակություն էին հաստատել Սև սարում։ Եվ որպեսզի այս խոսքը ուրիշ կերպ չընկալվի, շատերից քիչը կասենք. եղան մոտ վաթսուն կամ յոթանասուն հազար և առավել ևս շատ, այնքան, որ նրանց հեծյալներն ու հետևակները լցրին դաշտերն ու լեռները։ Եվ բոլոր զորքերի ստուգատես անելով՝ դասավորվեցին ու պատրաստվեցին Դավիթ-Բեկի վրա գրոհելու։ Եվ եկան բանակեցին Հալիձորի գետի մյուս կողմում, քառասուներորդաց պահքի տասներեքերորդ օրը։ Իսկ երբ Դավթի հետ եղած զորականները տեսան այդ ահագին բազմությունը՝ զարհուրեցին, նրանցից շատերը գնացին փաշայի մոտ և

էին. բայց որք քաջք եւ արիք էին՝ խիզախէին, եւ ի մար
պատերազմի պատրաստէին։

Եւ էջ բանակեցաւ սակաւուք Դաւիթ ի յամրոցէն ի շէնն
որ էր յայսկոյս գետոյն, հանդէպ բանակի նոցա. եւ առա
քեաց ընդ առաջ նոցա գունդ մի ի զօրաց հարիւր վաթսնից
կալնուլ զանցս գետոյն։ Եւ եկին կալան եւ ոչ թողլ տայի
նոցա անցանել զգետն՝ զաւուրս երկուս. բայց յաւուրն եր
րորդի՝ թուփանքաւորքն Հայոց, որք ընդ զօրս Օսմանցւոց
էին, անցին զգետն յայլ ուստեքէ, եւ եկին մտին կալան զմ
կողմն շինին. եւ հատին ըղօրսն Դաւթի։ Իսկ Դաւիթ եւ զօ
րականքն իւր՝ երեք հարիւր յիսուն արամբ մտին ամրացան
ի յամուրն անապատին։ Եւ էանց յայս կոյս ամենայն բանա-
կըն Օսմանցւոց, եւ մատուցեալ շուրջ պահ արկին զբերդաւ
եւ կանգնեցին զնովաւ պատնէշ, եւ անտի զգնտակս թօփից եւ
թուփանկաց ի ներքս հոսէին։ Եւ սոքա ի ներքուստ առ ար-
տաքս ընոյն ի նոյն առնէին, եւ զաւուրս վեց մարտ եդեալ
ընդ միմեանս կռուէին. եւ ի կողմանցն հակառակաց յաւուրն
հարիւր, կամ երկու հարիւր, եւ երբեմն երեք կամ չորս հա-
րիւր անկանէին. եւ ի սոցանէ հազիւ մի ոք կամ երկու՝ վասն
ամրութեան տեղւոյն։

Բայց յաւուրն եօթներորդի ընդ այգ ընդ առաւօտն, որչ
պաշարեալ պահէին զամուրն, կազմեցան, պատրաստեցան,
եւ դիմեալ մօտեցան ի պարիսպ անդր, այլ ոչ որպէս յերեկն եւ
յեռանդն, զի զահագին մեծամեծ մեքենայս (ըստ կերպի մե-
ծամեծ սանդղոց, թուով քսան եւ վեց) ընդ ինքեանց բար-
ձեալ բերէին, զայն մերձենային, եւ ի պարիսպ անդր յեցու-
ցանէին, եւ բազմութիւնն խուժանին յերիս խումբս բաժան-
էին, եւ յերից կողմանց գրոհ տուեալ, ի մեքենայից անտի ի
վերայ պարսպացն դիմէին։ Իսկ պահապանք պարսպացն ի
վերուստ անտի հարեալ ընոսա՝ ի մեքենայիցն ի վայր թօ-
թափէին, եւ բազմութիւնն գէշագէշ անկելոց նոցին, իբր վա-
ղահասուկն թզոյ հարեալ ի սաստկութենէ կարկտի՝ զյատա-
կըս մեքենայիցն ծածկէին. եւ զայն ամենայն ոչինչ համա-
րեալ՝ յառաւօտէ մինչեւ ցութերորդ ժամ աւուրն մեծաւ գոչ-
մամբ եւ տագնապաւ ի վերայ պարսպացն դիմէին։

Անդ էր տեսանել զայն ահեղ տեսիլ կատաղեալ զօրացն
ազմուկ աղաղակին. զի իբր զմեքենայսն կանգնեցին, հարիւ-
րաւոր եւ հազարաւոր դրօշակիրքն յառաջ խաղացին, ապա

անձնատուր եղան։ Բայց ովքեր որ քաջ ու արի էին՝ խիզախում էին և պատրաստվում մարտի։

Եվ Դավիթն իջավ բերդից ու ամրացավ գյուղում, որ գետի այս կողմն էր՝ նրանց բանակի հանդեպ, և թշնամուն ընդառաջ ուղարկեց մի զորագունդ, հարյուր վաթսուն հոգուց, գետանցները փակելու համար։ Եվ եկան փակեցին և երկու օր նրանց թույլ չէին տալիս գետն անցնել։ Բայց երրորդ օրը հայ հրացանակիրները, որ օսմանցիների զորքերի հետ էին, գետն անցան այլ տեղից և եկան մտան, գրավեցին գյուղի մի կողմը և մեկուսացրին Դավթի զորքերը։ Դավիթն ու իր զորականները՝ երեք հարյուր հիսուն հոգի, մտան և ամրացան մենաստանի բերդում։ Օսմանցիների ամբողջ բանակը գետըն անցավ։ Մոտենալով՝ բերդի շուրջը պահպանություն կարգեցին և պատնեշ կանգնեցրին։ Այնտեղից թնդանոթների ու հրացանների գնդակներ էին ներս թափում։ Եվ սրանք ներսից դուրս նույնը նրանց էին անում. վեց օր միմյանց դեմ կռվում էին. հակառակորդի կողմից օրական հարյուր կամ երկու հարյուր, երբեմն երեք կամ չորս հարյուր զոհ էր լինում, իսկ սրանցից՝ դիրքի ամրության շնորհիվ, հազիվ մեկ կամ երկու հոգի։

Բայց յոթերորդ օրը, լուսադեմին, ամրոցը պաշարողները փութով պատրաստվեցին ու մոտեցան պարսպին, ոչ թե երեկվա ու նախորդ օրվա նման, այլ իրենց ուսերին բարձած ահագին մեծ մեքենաներ՝ հսկայական սանդուղքների նման, թվով քսանվեց, բերում էին, գալիս մոտենում, հենում պարըսպին, և խուժանի բազմությունը երեք խմբի բաժանած՝ երեք կողմից գրոհելով, մեքենաների վրայով բարձրանում էին պարիսպները։ Իսկ պարիսպների պահապանները վերևից նրանց խփելով ներքև էին գլորում մեքենաներից, և նրանց դիակների բազմությունը կարկտի սաստկությունից թափվող վաղահասուկ թզի նման ծածկում էր գետինը՝ մեքենաների տակ, և այդ բոլորը արհամարհելով, առավոտից մինչև օրվա ութերորդ ժամը մեծաձայն գոչյուններով ու իրարանցումով դեպի պարիսպներն էին դիմում։

Պետք էր դիտել կատաղի զորքի աղմուկ-աղաղակի այդ ահավոր տեսարանը, որովհետև երբ մեքենաները դրեցին, հարյուրավոր ու հազարավոր դրոշակակիրներն առաջ շարժ-

զօրքն ամենայն զկնի հեղանէին, իբր յորձանս յորդախաղաց գետոց ահագին գոչմամբ, եւ կամ իբրու ամեհի ալիք ծովու յուզեալ ի բռնութենէ հողմոց՝ դարիւ եւ դարիւ գային, մի զմիով անցանէին, եւ ի մեքենայից անտի ի վերայ պարըսպացն դիմէին եւ առ հասարակ յերկոցունց կողմանցն ձայն փողոյ, ձայն զօսերաց, գոչիւն զօրաց, շառաչիւն հրալից գնդակաց, ճայթմունք հրացանից զականջս խլացուցանէին։

Իսկ որք ի ներքս էին, իբրեւ զայն ահեղ տեսիլ ի յամրոցէ անտի տեսանէին զգնդաց գնդաց այլասեռիցն՝ դրօշու դրօշու պատրաստութիւն, զնշանացն փողփողել եւ զճառագայթս զինուցն զինուորաց, զզանգակսն հնչեցուցանէին, զնշխարս ձեռաց սրբոյն Մինայի ի բազմոցի դնէին, եւ ամենեքեան անկեալ առաջի սրբոյ տեղանոյն՝ առ Աստուած գոչէին, եպիսկոպոսունք, քահանայք, ամենայն ժողովրդականք եւ կուսանք (զի անդ էր նաեւ մենաստան ինչ կուսանաց, ուր բնակէին քառասուն կամ յիսուն կուսանք), զի ամենեքեան զմահն առաջի աչաց ունէին։

Եւ յութերորդ ժամու աւուրն՝ իբրեւ տեսին զի բառնիւր այնուհետեւ յոյս փրկութեան, Մխիթար սպարապետն եւ Տէր Աւետիսն խրախոյս բարձին, ի զէն յարձակեցան, ապա զօրքն ամենայն առ նոսա ժողովեցան, բացի սպահապանաց պարըսպացն, վառեցան պատրաստեցան, զէն զգեցան, ի բարկութիւն բորբոքեցան ամենեքեան ի վերայ թշնամեացն։

Զի խօսիլ սկսան ընդ նոսա Մխիթարն եւ Տէր Աւետիսն եւ ասեն։ Քաջացարուք, մի՛ երկնչիք, ելէք զհետ մեր. եթէ հասեալ իցէ վախճան մեր՝ քաջութեամբ մեռցուք. զի լաւ իցէ մեզ արութեամբ արտաքոյ պարսպացն մեռանիլ՝ քան աստէն առաջի աչաց մերոց տեսանել զմահ ընտանեաց եւ բարեկամաց մերոց եւ զայլ դժնդակութիւնս։ Զբանսն ասացին եւ ինքեանք յառաջագոյն աճապարեցին ելին արտաքս ընդ գաղտնի դուռն պարսպին, եւ երեք հարիւր վառեալք զկնի նոցա։

Ո՜վ սքանչելեացս, ո՜վ մեծի ողորմութեանցն Աստուծոյ, երեք հարիւր վառեալք ի յութերորդ ժամու աւուրն ձայն ետուն, խրախոյս բարձին, յարձակեցան միանգամայն ի վերայ եօթանասուն հազարաց. զառաջինն յարձակեցան ի վե-

վեցին, ապա ամբողջ զորքը հորդահոս գետի հորձանքի նման
ահագին գոչումով թափվում էր, կամ հողմերի ուժգնությու-
նից փոթորկված ծովի ամեհի ալիքների պես հորձանքով գա-
լիս, իրարից առաջ էին անցնում, և այն մեքենաներից դե-
պի պարիսպներն էին դիմում։ Եվ առհասարակ երկու կող-
մից փողի ու թմբուկի ձայները, զորքերի գոչյունները, հրա-
լից գնդակների շաչյունը, հրազենների ճայթյունը ականջ
էին խլացնում։

Իսկ ներսում եղածները, երբ ամրոցից տեսնում էին այդ
ահեղ տեսարանը, թշնամական բազմաթիվ գնդերի ու դրո-
շակների պատրաստությունը, նշանների փողփողելը և մար-
տիկների զենքերի շողյունը՝ հնչեցնում էին զանգակները,
սուրբ Մինասի ձեռաց նշխարները բազմոցին էին դնում և
բոլորը ծունկի գալով սրբի սեղանի առաջ, դիմում էին Աստ-
ծուն՝ եպիսկոպոսները, քահանաները, ժողովուրդը, կուսա-
կրոնները (որովհետև այնտեղ կար նաև կույսերի մենաս-
տան, ուր բնակվում էին քառասուն-հիսուն մենակյաց), քա-
նի որ բոլորը մահն աչքն էին առել։ Եվ օրվա ութերորդ ժա-
մին, երբ տեսան, որ այնուհետև ապրելու հույս չի մնում,
Մխիթար սպարապետն ու տեր Ավետիսը խրախույս կար-
դացին և զենքի դիմեցին։ Այնժամ զորքերը նրանց շուրջը
խմբվեցին (բացի պարիսպների պահապաններից), զինվե-
ցին, պատրաստվեցին, զենք կապեցին, բոլորը զայրույթով
վառվեցին թշնամու դեմ։ Խոսել սկսեցին Մխիթարն ու տեր
Ավետիսը և ասացին. «Արիացե՛ք, մի՛ երկնչեք, հետևեցեք
մեզ, եթե հասել է մեր վախճանը՝ քաջաբար մեռնենք, որով-
հետև մեզ համար ավելի լավ է արիությամբ պարիսպներից
դուրս մեռնել, քան այստեղ, մեր աչքերի առաջ տեսնել մեր
ընտանիքների ու բարեկամների մահը և այլ դժնդակություն-
ներ»։ Այս խոսքերն ասացին և իրենք ամենից առաջ շտապ
դուրս եկան պարսպի գաղտնի դռնով, և երեք հարյուր զին-
վածներ հետևեցին նրանց։

Ո՜վ սքանչելիք և Աստծու մեծ ողորմածություն, երեք
հարյուր զինյալներ օրվա ութերորդ ժամին ձայնեցին, հոր-
դոր կարդացին, արագ հարձակվեցին յոթանասուն հազարի
վրա։ Նախ գրոհեցին աջակողմյան գնդին՝ աջ ու ձախ կո-
տորելով։

րայ յաջակողմեան գնդի նոցա՝ յաջ եւ յաՀեակ կոտորելով։
Իսկ նոքա յանկարծակի իբրեւ տեսին զայն աՀեղ յարձակումն եւ կոտորած ի վերայ ինքեանց Հասեալ, առ Հասարակ խռովեալք եւ խուճապեալք՝ դիմեցին յերկրորդ եւ յերրորդ խումբսն, զաղաղակ բարձեալ՝ թէ Հասին կոտորեցին սպանեցին զմեզ քրիստոնեայքն։ Եւ զայն իբրեւ լուան ամենեքեան Հիացան ափշեցան տկարացան ի խորՀուրդս իւրեանց, լքան լուծան եւ անկաւ աՀ ի Տեառնէ ի վերայ նոցա. զի մինչ դեռ ակն ունէին մեծի յաղթութեան՝ զբռամբ ածելոյ զամուրն յանկարծակի եՀաս նոցա այն անողորմ կոտորած։ Ուստի առ Հասարակ զարՀուրեալք եւ սասանեալք՝ ասէին այր ցընկեր Որ ոք կամի զանձն իւր ապրեցուցանել՝ փախստեան ուշ դիցէ։ Զի բազումք ի նոցանէ բազում անգամ զփորձ առեալ էին քաջութեանցն Դաւթի եւ արանց նորա. եւ զի աՀն աղաղակն եւ անՀնարին կոտորումն բանակի նոցա երթալով | երթայր եւ զօրանայր, այնուՀետեւ ոչ ոք Համարձակէր յետ ընդդէմ սոցա դառնալ, այլ ամենեքեան խռովեալք եւ խուճապեալք՝ փախստեայ լինէին։
Իսկ սոքա եւ որք մնացեալք էին ի բերդ անդր՝ Համարձակ ի վերայ յարձակէին, Հասանէին Հարկանէին, զբազումս առ եւեղ սատակէին, եւ զայլս խոցս եւ վիրաւորն Հալածականս առնէին անտի, մինչեւ ոչ թողուլ ի նոցանէ երկու | միասին. եւ ի նմին աւուր անկան անդ ի բանակէ Օսմանցւոց երեքտասան Հազար այր պատերազմող, եւ ի սոցանէ յոյժ սակաւ ոմանք, զի աջ ամենակարողին Հովանի եւ պաշտպան էր նոցա յամենայն պատերազմունս նոցա՝ առ ի փրկել եւ | կեցուցանել, եւ զթշնամիսն առաջի նոցա խորտակել, որպէս յայտնապէս տեսանի աստանօր եւ յայլ բազում տեղիս։ Եւ առին ի նոցանէ յաւուրն յայնմիկ Հարիւր քառասուն եւ ութ դրօշակ, եւ զայլ ամենայն կապուտ կողոպուտ բանակի նոցա։
Արդ իբրեւ ետես Դաւիթ՝ թէ Աստուած օգնական է ինքեան յամենայնի, խնդրէր այնուՀետեւ տալ պատերազմ ընդ Օսմանցւոցն, եւ Հանել զնոսա ի Ղափանու. եւ կամեցաւ ելանել նախ ի վերայ Մեղրեայ ամուր աւանին, բայց իբրեւ գիտաց թէ բազում զօրօք է անդ փաշայն | Օսմանցւոց, ոչ Համարձակեցաւ. եւ ի նմին ժամանակի յաւուրս քառասնորդացըն պաՀոց առաքեաց նա զՄխիթար սպարապետն եւ զտէր Աւետիսն՝ վաթսուն եւ վեց վառելովք առ Խանն Դուղայի եւ

*Իսկ թշնամիները, երբ հանկարծ տեսան իրենց վրա հասած այդ ահեղ հարձակումը, գլուխները կորցրած, խուճապահար դիմեցին երկրորդ և երրորդ խմբերի մոտ, աղաղակելով, թե՝ Հարձակվեցին, կոտորեցին մեզ քրիստոնյաները։ Եվ լսելով՝ բոլորը զարմացան, ապշեցին, տկարացան, հուսալքվեցին, կազմալուծվեցին, և ահ ընկավ նրանց վրա Տիրոջից, որովհետև մինչդեռ մեծ հաղթանակի՝ ամրոցն իրենց ձեռքը գցելու հույս ունեին, հանկարծակի վրա հասավ մի անողորմ կոտորած։*

*Ուստի բոլորը զարհուրած և սասանած ասում էին մեկը մյուսին՝ Ով ուզում է կյանքը փրկել՝ թող փախչի։ Որովհետև նրանցից շատերը բազմիցս տեսել էին Դավթի ու նրա մարդկանց քաջությունները, և քանի որ սարսափը, աղաղակը, նրանց բանակի անասելի կոտորածը գնալով սաստկանում էին, ուստի այնուհետև ոչ ոք չէր համարձակվում շրջվել Դավթի դեմ, այլ բոլորը շփոթված ու խուճապահար փախչում էին։*

*Իսկ սրանք և բերդում մնացածները համարձակ վրա հասան, խփեցին, շատերին տեղնուտեղը սպանեցին, ուրիշներին խոցելով ու վիրավորելով հալածեցին, մինչև որ նրանցից չթողին երկու հոգի իրար մոտ։ Եվ այն օրը օսմանցիների բանակից ընկավ տասներեք հազար զինվոր, իսկ սրանցից՝ շատ քչերը, որովհետև ամենակարողի աջը հովանի և պաշտպան էր նրանց բոլոր պատերազմներում՝ փրկելու և ապրեցնելու և նրանց առջև թշնամիներին խորտակելու, ինչպես ակնհայտ երևում է այստեղ և շատ այլ տեղերում։ Եվ նրանցից այն օրը խլեցին հարյուր քառասունութ դրոշակ և նրանց բանակի ամբողջ կապուտ-կողոպուտը։*

*Տեսնելով, որ Աստված ամեն ինչում զորավիգ է իրեն, Դավիթը ցանկանում էր այնուհետև ճակատամարտ տալ օսմանցիներին և վտարել Ղափանից։ Եվ ուզեց նախ գրոհել Մեղրի ամուր ավանը, բայց իմանալով, որ օսմանցիների փաշան մեծաթիվ զորք ունի այնտեղ, չհամարձակվեց և նույն քառասնորդաց պահքի ժամանակ Մխիթար սպարապետին ու տեր Ավետիսին վաթսունվեց զինված տղամարդկանց հետ ուղարկեց Դուզալի խանի և նրա եղբայր Լեքազի խանի մոտ*

առ եղբայր նորա Լեքազի խանն, եւ ասէ ցնոսա. Եկայք միաբանեալ տացուք պատերազմ ընդ Օսմանցւոց, եւ եկին գտին զնոսա ի շէնն Քուրդաշեան՝ ի կողմանս Ուրգուարայ, առ Երասխաւ. զի յաւուրսն յայնոսիկ շահ Թամազն էր ի Թաւրէզ, եւ իշխան զօրուն՝ որ էր Դուզայի խանն, բազում զօրօք ի կողմանս Երասխայ՝ ընդդէմ Օսմանցւոցն. եւ իբրեւ պատմեցին Դուղալի խանին զբանսն Դաւթի՝ երկեաւ առնել զայն։ Բայց եղբայր նորա Լեքազի խանն ջանայր հաւանեցուցանել. եւ մինչդեռ ընդ այս վիճէին՝ զօրք Օսմանցւոցն ելին ի յՈւրդուարայ քան դրօշուք, եւ եկին լցին զդաշտն Կրճիվանու. եւ ասեն Մխիթարն եւ տէր Աւետիսն ցխանն. Հա՛պա դիմեսցուք ի վերայ դոցա։ Եւ նա երկեաւ եւ ոչ կամեցաւ գալ։ Յայնժամ ելին չուեցին անտի երկոքեանքն՝ վաթսուն եւ վեց արամբ, եւ սակաւ ինչ պատահեալ զօրացն Օսմանցւոց՝ անցին գնացին ի նոցանէ. եւ զօրքն Օսմանցւոց գնացին մտին ի Մեղրի, եւ յաւելեալք ընդ զօրս Մեղրեայ փաշային, եղեն քան եւ երկու հազար զօրք։

Եւ իբրեւ ընդ երեկս լինէր, Մխիթար սպարապետն եւ տէր Աւետիսն՝ Դուզալի խանին ազդ առնէին, թէ ի գիշերի յայսմիկ հարկանելոց եմք զՄեղրի, յօգնութիւն հասէք. եւ նա առաքեաց յիսուն վառեալ, եւ սկսան զօրսն կարգել կազմել, եւ պատուէր տալ նոցա եւ ասել՝ զի ընդ այգն ընդ առաւօտն հասանիցեն ի վերայ Մեղրեայ, եւ ինքեանք երկու ոմամբք գան հասանին ի յայգեստանս Մեղրեայ. եւ անդէն առ ինքեանս զամենայն փախըստեայսն Մեղրացւոց (որք միանգամ նեղեալք եւ չարչարեալք ի դառն ծառայութենէ Օսմանցւոց՝ թափառականք աստ եւ անդ ի լերինս շրջէին) զամենեսեան զնոսա ժողովէին, կարգէին կազմէին, եւ ի գլուխն Մեղրեայ ի դարանի դնէին, եւ ինքեանք սակաւ ոմամբ գաղտնաբար գիշերայն ի Մեղրի մտանեն ծածուկ զինեալք։ Եւ իբրեւ առաւօտ լինէր զօրքն իւրեանց ոչ հասանէին. բայց զօրացն Օսմանցւոց իբրեւ ազդ լինէր՝ թէ զօրաժողով են Հայք արտաքոյ պարսպացն ի բացի, զէն զգեցան, ձի հեծան եւ պատրաստեցան ի պատերազմ։ Յայնժամ Մխիթար սպարապետն, եւ տէր Աւետիսն եւ որք ընդ նոսա էին, սուսերամերկք լինէին, ի մէջ բերդին յարձակէին, զհարկահանն Օսմանցւոց սատակէին, ապա որում եւ պատահէին զօրացն Օսմանցւոց՝ անդանօր սատակէին, եւ զայլս շտապ տագնապաւ առաջի

և ասում է. «Եկեք միաբանելով պատերազմ տանք օսմանցիներին»։ Եվ եկան գտան պարսիկ խաներին Քուրդաշյան ավանում, որ Երասխի մյուս ափին է, Ուրդուարի կողմերում։ Որովհետև այն օրերին շահ Թահմազը Թավրիզում էր, իսկ զորքի հրամանատարը, որ Դուզալի խանն էր. բազում զորքով Երասխի կողմերում էր, օսմանցիների հանդիման։ Եվ երբ հաղորդեցին Դուզալի խանին Դավթի խոսքերը, նա վախեցավ այդ անել։ Բայց նրա եղբայր Լեքազի խանը աշխատում էր համոզել նրան [միաբանելու Դավթի հետ]։ Ու մինչդեռ վիճում էին սրա շուրջը, Ուրդուարից օսմանյան զորքեր ելան քսան դրոշով և գնացին լցվեցին Կրճիվանի դաշտը։ Եվ Մխիթարն ու տեր Ավետիսը ասացին խանին՝ «Հասեք նրանց վրա»։ Իսկ նա վախեցավ և չուզեց հարձակվել։ Այնժամ ելան գնացին այնտեղից երկուսը՝ վաթսունվեց մարդով, օսմանցիների սակավ զորքերի պատահելով՝ անցան գնացին նրանց մոտով, և օսմանցոց զորքերը մտան Մեղրի ու միացան Մեղրիի փաշայի զորքերին, դարձան քսաներկու հազարանոց զորք։

Իրիկնաժամին Մխիթար սպարապետն ու տեր Ավետիսը Դուզալի խանին լուր ուղարկեցին՝ «Այս գիշեր հարվածելու ենք Մեղրիին, մեզ օգնության եկեք»։ Եվ նա ուղարկեց հիսուն զինվոր, և սկսեցին զորքը դասավորել և հրահանգ տալ ու ասել, որ առավոտյան այգաբացին հարձակվեն Մեղրիի վրա։ Իրենք երկուսով եկան հասան Մեղրիի այգեստանները և այնտեղ իրենց շուրջը հավաքեցին բոլոր փախած մեղրեցիներին, որոնք օսմանցոց դառն ծառայությունից նեղված՝ այստեղ լեռներում, շրջում էին թափառական։ Նրանց բոլորին հավաքեցին, կազմակերպեցին ու Մեղրիի վերևում դարան մտան։ Իսկ իրենք քիչ մարդկանցով զինված այնտեղից գիշերը գաղտնաբար մտան Մեղրի։ Երբ լուսանում էր, նրանց զորքը չէր հասել։ Բայց օսմանցիների զորքերի մեջ լուր տարածվեց, թե հայերը պարիսպներից դուրս հավաքում են իրենց զորքը. զենք վերցրին, ձի հեծնեցին և պատրաստվեցին պատերազմի։ Այդ ժամանակ Մխիթար սպարապետը, տեր Ավետիսը և նրանց զինակիցները մերկացրին սուսերները, մտան ամրոցը, սպանեցին օսմանցիների հարկահանին, ում հանդիպեցին նրանցից՝ կոտորեցին, մյուսներին խուճապա-

տանէին, մինչեւ ի Փոքր Թաղն հասուցանէին զՓաշայն, եւ անդ ի վերայ հասին նաեւ դարանամուտքն ի գլխոյն Մեղրեայ. եւ սկսան փախուստ առնուլ զօրքն Օսմանցւոց։

Յայնժամ Մխիթարն, տէր Աւետիսն եւ որք ընդ նոսա՝ իբրեւ տեսին թէ հասին դարանամուտքն ի վերայ Օսմանցւոցն, թողին զնոսա եւ աճապարեցին՝ հասին կալան ինքեանք ըզկիրճս ճանապարհի նոցա, որ առ Երասխաւն էր, որ այժմ յայլազգեաց կոչի Ուզուն պէնտ. եւ էր կիրճն այն երկայն՝ ձգեալ իբրու գնացս միոյ ժամու կամ երկուց, որոյ մի կողմ էր քարաժայռն մեծ, եւ ի միւս կողմն՝ Երասխն յորդահոս. անդ իբրեւ մտին փախստեայքն Օսմանցւոց ի կիրճն, սոքա ելին ընդ առաջ նոցա ի պատերազմ. եւ իբրեւ զայն տեսին, նեղեցան յոյժ զի պաշարեալ մնացին յամենայն կողմանց, եւ ստիպեցան անցանել զգետն Երասխ. այլ սոքա ի վերայ հասին նոցա, զբազումս առ եզր սատակեցին եւ զայլ բազումս ի գետն հեղձուցին։ Եւ անտի դարձ արարին, եկին հասին ի Մեղրի, եւ անդ գտին զանբաւ կառափունս Թուրքաց, զանհամար ձիս եւ զջորիս նոցա, զանթիւ զանչափ գոյս նոցա, իբր չորեք հարիւր տաղանդոյ ինչս. զբեռն հարկահանին բացին | եւ անդ երեսուն եւ երկու հազար թուղթս հարկաց գտին, եւ զայն ամենայն ի հուր այրեցին։ Եւ զԴաշեալ Նորվէլն գտին, եւ զի ուրացեալ էր զՔրիստոս՝ զգլուխն հատին։

Ապա յետ այսորիկ իբրեւ սակաւ ինչ ժամանակ ի վերայ անցանէր, ասպատակիչ փաշայն Օսմանցւոց բազում զօրօք դիմէր գայր, եւ բնակէր ի Բեխ կոչեցեալ շէնն, իբր զաւուրս միոյ շաբաթու. զբազում հնարս խորհէր ի վերայ Դաւթի եւ զօրաց նորա, եւ ամենեւին զոչինչ կարաց առնել. այլ զօրականքն Դաւթի ի գիշերի միում ի վերայ հասին նոցա, հարին կոտորեցին զբազումս ի նոցանէ, եւ զփաշայն հալածականս արարին։

Յետ այսորիկ գունդ մի զօրաց ութն հարիւրոց ի Պարկուշատ եկին, զի գնասցեն անտի ի Տաթեւ. եւ սոքա իբրեւ զայն զգացին, զգիշերայն ի Օքուզեարաթ կոչեցեալ լեառն ելանէին եւ զանցս ճանապարհին ըմբռնէին։ Իսկ նոքա ընդ այգն ընդ առաւօտն իբրեւ եկին անդր հասին, սոքա ի վերայ յարձակեցան, հարին կոտորեցին ի նոցանէ երեսուն եւ վեց այր, զեօթն այր եւս գերեցին, եւ առին զամենայն ինչս նոցա եւ

հար հալածեցին։ Փաշային մինչև Փոքր Թաղ հասցրին։ Այդտեղ վրա հասան նաև դարանամուտները Մեղրիի վերևից, և օսմանցոց զորքերն սկսեցին փախչել։

Այնուհետև Մխիթարը, տեր Ավետիսը և մյուսները, տեսնելով, որ օսմանցիների վրա հարձակվեցին նաև դարանամուտները, թողին նրանց և շտապեցին հասնել, գրավել նրանց ճանապարհի կիրճը, որ Երասխի երկայնքով էր [ձգվում], որն այժմ այլազգիներն անվանում են Ուզուն-պենտ։ Երկարաձիգ էր կիրճը, որ մեկ-երկու ժամվա ճանապարհ էր, մի կողմը մեծ քարաժայռ էր, մյուսը՝ հորդահոս Երասխը։ Երբ օսմանցի փախստականները մտան կիրճը, սրանք նրանց ընդառաջ եկան պատերազմելու։ Այդ տեսնելով [վերջինները] նեղվեցին, որովհետև շրջապատված էին բոլոր կողմերից և ստիպված էին անցնել Երասխ գետը։ Իսկ հայերը հարձակվեցին, շատերին տեղնուտեղը սպանեցին, մյուսներին խեղդեցին գետում։ Եվ դարձան, եկան հասան Մեղրի ու այնտեղ տեսան Թուրքերի անթիվ գլուխներ, նրանց անհամար ձիերն ու ջորիները, անչափ գույք, շուրջ չորս հարյուր տաղանդի ապրանք, հարկահանի բեռը բացին ու այնտեղ՝ երեսուներկու հազար մուրհակ, և այդ բոլորն այրեցին։ Եվ գտնելով Դաշյաց Նորվելին, որ ուրացել էր Քրիստոսին՝ գլխատեցին։

Սրանից հետո որոշ ժամանակ անցավ, օսմանցիների ասպատակիչ փաշան բազում զորքով եկավ ու բանակեց Բեխ գյուղում և մոտ մի շաբաթ ամբողջ օրը փնտրում էր զանազան հնարներ՝ Դավթին ու նրա զորականներին նենգությամբ որսալու, և ոչինչ չկարողացավ անել։ Իսկ Դավթի զինվորները մի գիշեր հարձակվեցին նրանց վրա, կոտորեցին նրանցից շատերին և փաշային հալածական դարձրին։

Սրանից հետո ութհարյուրանոց մի զորագունդ Պարկուշատ եկավ, որպեսզի այնտեղից գնա Տաթև։ Եվ սրանք դգալով այդ, գիշերով Օքուզիարաթ կոչվող լեռը բարձրացան և բռնեցին ճանապարհի անցքերը։ Իսկ նրանք առավոտյան այգաբացին, երբ եկան հասան այնտեղ, հայերը վրա հասան, խփեցին կոտորեցին երեսունվեց հոգու և յոթ մարդու գերեցին, հարվածեցին, առան նրանց ամբողջ գույքն ու

դարձան ի Հալի ձոր։

Ապա այլ եւս զօրք Օսմանցւոց եկին բանակեցան ի գիւղ մի Թուրքաց՝ մերձ ի Մանլեւ, զնոսա եւս՝ ի գիշերի ի վերայ հասին՝ կոտորեցին եւ միայն զերկուս ի նոցանէ կենդանի ածին ի Հալի ձոր։

Արդ՝ յամի Տեառն 1727ին, որ այն հինգերորդ ամ էր գալստեանն Դաւթի ի Ղափան, իբրեւ տեսանէր Դաւիթ Պէկն՝ ողորմութեամբն Աստուծոյ՝ յամենայն ուրեք զթշնամիսն առաջի իւր վանելու եւ խորտակելս, առաքեաց Շահթամազ արքային Պարսից զշորս բեռինս գլխովք սպանելոց ի բազմութենէ կոտորածին, զորս հասուցին Օսմանցւոց. եւ նա իբրեւ զայն տեսանէր՝ ուրախ լինէր յոյժ ի վերայ թշնամեացն իւրոց, եւ զարմանայր յոյժ ի վերայ քաջութեանցն Դաւթի եւ զօրավարաց նորա, զընծայս պարգեւէր, հրովարտակս գրէր առ նա՝ ըստ բանիցս ըստ այսոցիկ.

«Շահթամազ արքայ Պարսից՝ առ քաջդ Դաւիթ Պէկ, եւ առ քաջ զօրավարսդ Հայոց՝ որք ընդ քեզ են, ողջոյն։ Ի բազմաց բազում անգամ ազդ եղեւ մեզ զքաջութեանց քոց. բայց արդ իբր ականատես իսկ եղեալ մեր զձերոց մեծամեծ քաջութեանց՝ որ ընդդէմ թշնամեացն մերոց։ Ահա՛ արդ կացուցի զքեզ իշխան եւ զլուխ ամենայն իշխանաց մերոց, որք են ի կողմանսդ յայդոսիկ. եւ երկիրդ Ղափան՝ զոր կալար քաջութեամբ, քեզ լիցի. բայց դու ելցես եւ ժողովեսցես առ քեզ զամենայն զօրս եւ զխանս ի կողմանցդ յայդոցիկ, եւ ի բաց հանցես զՕսմանցին ի սահմանաց քոց»։

Եւ ետ բերել նմա զմի խաշվառ եւ զմի պատուական նրժոյգ ձի, նաեւ զիշխանութիւն կարող | լինելոյ դրամ հատանել, եւ իւրաքանչիւր զօրապետաց նորա զմի մի պատմուճան առաքեաց։ Եւ եկին հնազանդեցան նմա ամենայն իշխանք եւ գաւառապետքն Թուրքաց։

Եւ եւ գնաց Դաւիթ ի Հալիձորոյ ի Մեղրի, եւ բանակեցաւ անդ. եւ ժողովեալ առ ինքն զամենայն զօրսն Մեղրեայ եւ Ջաւրնդրու, անտի խաղաց գնաց եւ բանակեցաւ ի Կրճէվան աւանին, եւ հանդէս արարեալ անդ ամենայն զօրացն՝ առաքեաց զնոսա ի ձեռն քաջ զօրապետացն ի վերայ Ուրդուար քաղաքի։ Եւ գնացին հասին անդ, եւ ի ժամ գիշերոյ՝ ի մէջ քաղաքին յարձակեցան, հարին կոտորեցին յՕսմանցւոցն երեք հարիւր այր, եւ մնացեալքն ելին փախեան ի քաղաքէն

վերադարձան Հալիձոր։

Ապա օսմանցիների ևս մի զորք եկավ բանակեց Մանլևի մերձակա մի թուրքական գյուղում։ Գիշերով հարձակվեց նաև դրանց վրա և նրանցից միայն երկուսին կենդանի տարան Հալիձոր։

Արդ, Քրիստոսի 1727 թվականին, որ Դավթի Ղափան գալու հինգերորդ տարին էր, երբ Դավիթ-Բեկը տեսավ, որ Աստծու ողորմությամբ իր թշնամիներն ամենուրեք խորտակված են ու վտարված, պարսից շահ Թահմազին ուղարկեց սպանված օսմանցիների չորս բեռ գլուխ։ Այդ տեսնելով շահը շատ ուրախացավ իր թշնամիների մահով և շատ զարմացավ Դավթի ու նրա զինվորների քաջագործությունների վրա, ընծաներ տվեց և հրովարտակ գրեց նրան այսպիսի խոսքերով.

«Շահ Թահմազ պարսից արքայից քաջ Դավիթ-Բեկին և հայոց քաջ զորավարներին, որ քեզ հետ են՝ ողջույն։ Շատերից բազմիցս իմացել ենք քո սխրանքների մասին, բայց հիմա կարծես նաև ականատես եղանք ձեր մեծամեծ քաջագործություններին, որ մեր թշնամիների դեմ գործեցիք։

Եվ ահա այսօր քեզ կարգեցի իշխան և գլուխ մեր բոլոր իշխանների, որ այդ կողմերում են, և Ղափանի երկիրը, որ վերցրիր քաջությամբ՝ քեզ լինի։ Բայց դու պիտի կլինես ու քո շուրջը համախմբես բոլոր զորքերը և այդ կողմերի խաներին, դուրս վանես օսմանցիներին քո սահմաններից»։

Եվ նրան ուղարկեց մի խաչվառ և մի պատվական նժույգ, նաև դրամ հատելու իրավունք, իսկ նրա զորապետներից յուրաքանչյուրին՝ մեկական պատմուճան։ Եվ եկան Դավթին հնազանդեցին բոլոր իշխաններն ու թուրքերի գավառապետները։

Դավիթը ելավ Հալիձորից, գնաց Մեղրի ու բանակեց այնտեղ։ Ժողովելով իր մոտ Մեղրիի, Ջավնդուրի ամբողջ զորքերը, շարժվեց գնաց բանակեց Կրճիվան ավանում, այնտեղ դասավորեց բոլոր զորքերը, քաջ զորավարների գլխավորությամբ ուղարկեց Ուրդուար քաղաքի վրա։

Եվ գնացին այնտեղ հասան գիշերով, քաղաքի վրա հարձակվեցին և կոտորեցին օսմանցիներից երեք հարյուր տղամարդ, մնացածները փախան և գնացին քաղաքից դուրս մի

եւ գնացին ի դիպուկ ինչ տեղի՝ արտաքոյ քաղաքին՝ բանակ առեալ բանակեցան։ Եւ սոցա առեալ զաւարն՝ արկին սեղանըս, զի կերիցեն եւ արբցեն. յայնժամ գայ ի վերայ հասանի նոցա Դաւիթ Պէկն մինչդեռ բազմեալ էին զորավարքն ի սեղան, եւ ցասուցեալ ի վերայ նոցա՝ ասէ. Թշնամիքն ձեր արտաքոյ քաղաքիս բանակ առեալ բանակին, եւ դուք նստեալ աստ ուտէք եւ ըմպէք։ Եւ առժամայն թողեալ զուտելն՝ հեծան կազմեցան եւ յարձակեցան ի վերայ | բանակի Օսմանցւոցն. իսկ նոքա իբրեւ տեսին՝ գիտացին թէ զօրն Պարսից է, եւ ելին ընդառաջ՝ ի մարտ պատերազմի. բայց իբրեւ զփորձ առին եւ գիտացին թէ այն է զօր Դաւիթ Պէկին, ի փախուստ դարձան եւ գնացին. եւ սոքա առին զնոցանէ զբազում ջոկս ձիոց եւ ջորեաց, եւ առաքեցին զայն ամենայն առ Դաւիթ. եւ ինքեանք դիմեն գան ի Դէշտ կոչեցեալ աւանն։ Իսկ արք աւանին ի հեռուստ իբրեւ զգալ զօրացն տեսին, համարեցան թէ զօր այլազգեաց է այն, եւ փախեան ի յԱգուլիս։

Եւ անտի չուեն գան Մխիթար սպարապետն եւ տէր Աւետիսն հանդերձ զօրուն ի յԱգուլիս քաղաք. իսկ պահապանք մեծ դրան քաղաքին, ընդ տեսանելն զսոսա՝ փախչին. եւ սոցա համարձակ մտեալ ի քաղաքն, երթան ի վաճառատեղն՝ առ ի յոյզ եւ խնդիր առնել զՕսմանցիսն, եւ գտանեն անտի փախուցեալ զհարկահանսն Օսմանցւոց, եւ ինքեանք երթան բանակին ի վանս սրբոյն Թովմայի առաքելոյն. եւ մինչ դեռ անդ էին նոքա՝ լուան արտաքոյ աղմուկ շփոթի, եւ երկու ոմանք ի սոցանէ ձի կալան եւ ելին արտաքս եւ գնացին, զի ոմն ի Թուրքաց յափշտակեալ զմի ոմն գերի վարէր, եւ պնդեցան զհետ նորա, | եւ նորա թողեալ զգերին՝ փախեաւ։

Արդ՝ սակաւ ինչ կացեալ անդ, տեսին ի դիտանոցէն՝ զի Դաւիթ Պէկն եւս գայր մտանէր ի քաղաքն, եւ ելին ընդ առաջ նորա. եւ զգեցոյց նա իւր զօրականացն զմի մի պատմուճան, եւ դարձան վերստին բանակեցան ի սուրբն Թովմայ. եւ արք քաղաքին՝ ըստ սովորութեան իւրեանց՝ ամենեքեան գային եւ զձեռսն Դաւիթ Պէկին համբուրէին։ Եւ Մելիք Մուսին, որ նա ինքն քաղաքապետն էր, իբրեւ գայր յանդիման լինէր՝ Դաւիթ հրաման տայր իւրոցն եւ ասէր. Ի գիշերիս յայսմիկ հատէք զգլուխն Մուսեայ. զի այր նենգաւոր էր նա եւ խարդախ. բայց մելիք Փարսադայն յառաջ մատուցեալ՝ բարեխօս լինէր վասն նորա, եւ զվճիռ մահուն դարձուցանէր։

համար տեղ կոտորվեցին։ Եվ սրանք վերցնելով ավարը, սեղան բացին, որ ուտեն և ըմպեն։ Այն ժամանակ, երբ բազմել էին զորավարները սեղանի շուրջը, եկավ Դավիթ-Բեկը, վայրանալով նրանց վրա, ասում է. «Ձեր թշնամիները քաղաքից դուրս հավաքված բանակել են, իսկ դուք այստեղ նստած խրախճանում եք»։ Անմիջապես թողնելով ուտելը, ձի նստեցին, հարձակվեցին օսմանցոց բանակի վրա։ Իսկ նրանք՝ այդ տեսնելով՝ կարծեցին, թե պարսից զորքն է, և ընդառաջ ելան պատերազմելու, բայց երբ ստուգեցին իմացան, որ Դավիթ-Բեկի զորքն է, փախուստի դիմեցին։ Եվ սրանք ձիերի ու ջորիների բազմաթիվ ջոկեր խլեցին նրանցից, այդ ամենը Դավթին ուղարկեցին, և իրենք դիմեցին Դաշտ կոչված ավանը։ Իսկ ավանի մարդիկ, երբ հեռվից տեսան զորքերի գալը, կարծեցին, թե այլազգի զորք է, փախան Ագուլիս։

Այնտեղից շարժվելով՝ Մխիթար սպարապետն ու տեր Ավետիսը զորքով դիմեցին դեպի Ագուլիս։ Եվ երբ եկան քաղաքի մեծ դարպասին հասան, պահապանները սրանց տեսնելուն պես փախան։ Իսկ սրանք անարգել մտան քաղաք, գնացին վաճառատեղի՝ փնտրելու և գտնելու օսմանցիներին և այնտեղ գտան փախած օսմանցի հարկահաններին, և իրենք գնացին բանակեցին սուրբ Թովմա առաքյալի վանքում։ Ու մինչդեռ նրանք այդտեղ էին՝ դրսից աղմուկ-աղաղակ լսեցին, և նրանցից երկու հոգի ձի առան, դուրս ելան ու տեսան, որ մի թուրք մեկին առևանգած գերի էր տանում. հետապնդեցին նրան, և նա գերուն թողնելով՝ փախավ։

Այստեղ մի քիչ մնալով, դիտանոցից տեսան, որ Դավիթ-Բեկը նույնպես գալիս մտնում է քաղաք , նրան ընդառաջ գնացին։ Եվ նա իր զինվորներից յուրաքանչյուրին մեկական պատմուճան հագցրեց, և դարձան վերստին բանակեցին սուրբ Թովմայում։ Իսկ քաղաքի տղամարդիկ, իրենց սովորության համաձայն, բոլորը գալիս և համբուրում էին Դավիթ-Բեկի ձեռքը։ Մելիք Մուսին, որ քաղաքապետն էր, երբ գալիս ներկայանում է, Դավիթը յուրայիններին հրամայում է՝ «Այս գիշեր հատեցեք Մուսիի գլուխը», որովհետև նա նենգավոր ու խարդախ մարդ էր։ Բայց մելիք Փարսադանը առաջ է գալիս և բարեխոսում նրա համար և մահվան վճիռը փոխել տալիս։

Եվ սրանք տասն օր այդ քաղաքում մնացին, երեք ան-

Եւ մնացեալ սոցա ի քաղաքի անդ, ի միջոցի տասն աւուրց՝ երիցս անգամ յարձակեցան ի վերայ նոցա զօրքն Օսմանցւոց, եւ երիցս խորտակեցան ի քաջամարտիկ զօրացն Դաւթի։

Յետ այսորիկ արքայն Պարսից հասոյց ի թիկունս Դաւթի զերիս խանս, եւ վերստին դիմեաց Օսմանցին, եւ միւսանգամ խորտակեցաւ եւ ի փախուստ դարձաւ։ Եւ այս ամենայն պատահէր նոցա յայն սակս, զի իշխանքն Ագուլեցւոց ծածկապէս դաշնադիրք էին ընդ Օսմանցւոց, եւ սոքա ոչ գիտէին։

Ապա յետ երկուց աւուրց եկին հասին բազմութիւն զօրացն Օսմանցւոց, եւ լցին զդաշտն Մարաղու, եւ անդ բաժանեցան յերիս առաջս. իսկ որք ընդ Դաւթի էին՝ նոքա եւս յերիս առաջս բաժանեցան. խանքն Պարսից ի մի կողմն, եւ զօրքն Հայոց ի միւս կողմն. իսկ տէր Աւետիսն՝ հանդերձ զօրուն՝ դիպեցաւ ի կողմն Երասխու։ Արդ՝ իբրեւ խմբեցան ի պատերազմ, խանքն Պարսից ի փախուստ դարձան յերեսաց Օսմանցւոց, բայց զօրքն Հայոց պինդ կացին, հարին սաստկեցին զբազումս ի Օսմանցւոց, եւ զայլսն ի փախուստ դարձուցին։ Ապա դարձան, զկնի խանիցն պնդեցան, հասին նոցա, (մինչդեռ փախստեայ երթային նոքա ի Թավրէզ), եւ զամենայն զօրս նոցա ի յԱգուլիս դարձուցին. բայց խանքն փախեան, եւ սոքա գնացին՝ աւար առին զտունս նոցա, եւ զտիկնայս նոցա՝ հանդերձ ութեւտասան աղախնեօք եւ չորս ներքինեօք՝ գերի վարեցին ի Հայս ձոր։

Արդ՝ յետ այսորիկ իբրեւ երկու աւուրք ի վերայ անցին, արքն Ագուլիսի եւ մելիք Մուսին զթշնամութիւնս եւ զդաւաճանութիւնս իւրեանց յայտ արարին, զի ի մէջ քաղաքին զրոհ տուեալ՝ ի վերայ զօրացն Դաւթի դիմեցին, մինչդեռ ի վանս սրբոյն Թովմայի էին նոքա՝ արտաքոյ քաղաքին, եւ ի քաղաքէ անտի սկսան զհրացանս արձակել ի վերայ նոցուն. այլ սոքա խնայեցին ի նոսա, վասն զօրոյն համազգային, եւ զի ոչ կամէին մտանել յարիւն այնքան քրիստոնէից. վասն զի ի քաղաքի անդ էին աւելի քան զտասն հազար տուն Հայոց. ուստի եւ արտաքս մելիք Փարսադան, եւ ասէ ցարսն քաղաքին. Արք եղբարք, հանդարտ լերուք, մի՛ եւս արձակէք հրացանս, թոյլ տուք զի ելցէ տէրն մեր արտաքս եւ գնասցուք աստի, եւ ձեզ ոչինչ մեղիցուք։ Այլ նոքա առաւել եւս վատթար

գամ օսմանցու զորքերը նրանց վրա հարձակվեցին և երեք անգամ խորտակվեցին Դավթի քաջամարտիկ զորքերից։

Դրանից հետո պարսից արքան Դավթին օգնության է ուղարկում երեք խաների, և օսմանցիները վերստին հարձակվելով դարձյալ խորտակվեցին ու փախուստի դիմեցին։ Այս ամենը այն պատճառով էր տեղի ունենում, որ ագուլեցոց իշխանները գաղտնապես դաշնակից էին օսմանցիների հետ, իսկ սրանք չգիտեին։

Երկու օր անց եկավ Հասավ օսմանցիների զորքի բազմությունը և լցրեց Մարաղու դաշտը։ Այնտեղ բաժանվեցին երեք մասին։ Իսկ ովքեր Դավթի հետ էին՝ նույնպես երեք մասի բաժանվեցին. պարսից խաները մի կողմը, հայոց զորքը մյուս կողմը, իսկ տեր Ավետիսը իր զորքով գնաց Երասխի կողմը։ Երբ խմբվեցին պատերազմելու, պարսից խաները փախան օսմանցիներից, բայց հայոց զորքերը հաստատ մնացին, խփեցին, սատակեցին օսմանցիներից շատերին, իսկ ուրիշներին փախուստի մատնեցին։ Ապա դարձան հետապնդեցին խաներին, հասան նրանց (մինչ նրանք Թավրիզ էին փախչում) և նրանց ամբողջ զորքը Ագուլիս վերադարձրին։ Բայց խաները փախան, իսկ սրանք գնացին ավար առան նրանց տները, նրանց տիկնանց՝ տասնութ աղախնով ու չորս ներքինիներով, գերեվարեցին Հալիձոր։

Սրանից հետ մոտ երկու օր էս անցավ Ագուլիսի տանմարդիկ և մելիք Մուսին ի հայտ բերին իրենց թշնամանքն ու դավաճանությունը, քանի որ քաղաքի մեջ գրոհ տալով հարձակվեցին Դավթի զորքերի վրա։ Մինչդեռ նրանք սուրբ Թովմայի վանքում էին, քաղաքից դուրս, [դավաճանները] սկսեցին քաղաքից հրազենով գնդակոծել նրանց։ Բայց իրենք խնայեցին նրանց՝ համազգի լինելու պատճառով և, քանի որ չէին ցանկանում այնքան քրիստոնյաների արյուն հեղել, որովհետև այն քաղաքում կար ավելի քան տասը հազար տուն հայ, ուստի մելիք Փարսադանը դուրս եկավ և ասաց քաղաքի մարդկանց. «Երբայրնե՛ր, հանգիստ եղեք, հրացան մի կրակեք, թույլ տվեք, որ մեր տերը դուրս գա, գնանք այստեղից և ձեր դեմ մեղք չգործենք»։ Բայց ագուլեցիք առավել

գոլով, հարին եւ անդէն զմիջնորդն խաղաղութեան մինչդեռ խաղաղութեան բանս բարբառէր՝ սպանին զնա, որ եւ զտէրն նոցա զմելիք Մուսին ի մահուանէ ապրեցոյց։ Այլ որք ընդ Դաւթի էին, իբրեւ զայն տեսին, գիտացին զի վճարեալ էր այնուհետեւ չարութիւն նոցա. քակեցին զմի կողմն պարսպի վանացն եւ անտի չուեցին գնացին եւ ի գիւղ մի Թուրքաց հասին, եւ գտին անդ զբազում ինչս Ագուլեցւոց՝ զձիս, զջորիս եւ զհազար երեք հարիւր ոչխարս սպանդանոցի, եւ զայլ ինչս նոցա անտի առին եւ գնացին ի Մեղրի։

Եւ յետ երկուց աւուրց՝ զօրականքն Դաւթի միւսանգամ ի յԱգուլիս արշաւեցին եւ եկին՝ որ ինչ էր նոցա արտաքոյ քաղաքին՝ զամենայն առին, եւ մօտեալք ի քաղաքն՝ յերկուց կողմանց հուր արկին, զի թերեւս ելցեն արտաքս առ ի մարտընչիլ, զի ոչ կարէին հանդուրժել չարեացն եւ դաւուն՝ զոր նոքա արարին։ Եւ իբրեւ ոչ ելին արտաքս առ նոսա, առին զաւարն եւ գնացին ի Մեղրի, եւ անտի դարձան ի Հալի ձոր եւ անդ օթեւանս կալան։

Եւ յաւուրսն յայնոսիկ՝ Դաւիթ Պէկն առաքէ զտէր Աւետիսն առ զօրականսն որք էին ի Ջավնդուր, եւ նոքա մերժեն զԴաւիթ եւ ոչ ընդունին զբանս նորա։ Եւ նա դառնայ գայ առ Դաւիթ եւ զապստամբութիւն նոցա յայտ առնէ նմա, եւ թէ որպէս կացուցեալք են ի վերայ ինքեանց զոստիկանս Օսմանցւոց։ Յայնժամ հրաման տայ Դաւիթ չորեքտասան զօրագլխաց իւրոց երթալ կալնուլ եւ զնոսա կապեալս առ ինքն ածել. եւ ելին կազմեցան պատրաստեցան, ձի հեծան եւ գնացին հասին, հարին զնոսա, եւ կալան կապեցին զզօրավարսն եւ զՕսմանցի ոստիկան նոցա, եւ ածին կացուցին զնոսա ի Հալի ձոր առաջի Դաւթի։ Եւ իբրեւ յանդիման եղեն նորա, յառաջ մատուցեալ աղաչէին, երդմունս եւ դաշինս դնէին եւ ասէին. Այսուհետեւ քեզ հնազանդիմք մինչեւ ցմահ։ Եւ հաւատացեալ Դաւթի՝ արձակեաց զնոսա ի կապանաց, եւ զերկու զօրավարս առ ինքն եթող, եւ զայլսն ետ ի ձեռս տէր Աւետիսին, զի լինիցին ի ներքոյ հրամանաց նորա։ Եւ նորա առեալ զնոսա ի Ջավնդուրն, եւ արձակէ զիւրաքանչիւրն ի տունս իւրեանց։

Եւ յետ այսորիկ Բաթալի խանն եւ զօրքն Օսմանցւոց, ի գիշերի միում գան եւ հարկանեն զերիս գիւղս Հայոց, եւ կալեալ զերիս զօրապետս՝ ածեն ի Պարկուշատ։ Եւ իբրեւ զայն

վատթար լինելով, խփեցին նաև խաղաղության միջնորդին՝ մինչդեռ հաշտության խոսքեր էր ասում, սպանեցին նրան, որ իրենց տիրոջը՝ մելիք Մուսիին մահից փրկել էր։ Իսկ ովքեր Դավթի հետ էին, երբ այդ տեսան, հասկացան, որ այլևս վերջացել էր նրանց չարությունը, քանդեցին վանքի պարսպի մի կողմը և այնտեղից դուրս ելան, գնացին և հասան Թուրքերի մի գյուղ և այնտեղ գտան ագուլեցոց գույքը՝ ձի, ջորի, հազար երեք հարյուր սպանդանոցի ոչխար և այլ բաներ, վերցրին այնտեղից ու գնացին Մեղրի։

Երկու օր հետո Դավթի զորականները կրկին Ագուլիս արշավեցին և եկան, մոտեցան քաղաքին, երկու կողմից կրակ տվին, որ գուցե ելնեն մարտնչելու, որովհետև չէին կարող հանդուրժել դավն ու չարիքը, որ գործեցին նրանք։ Եվ երբ դուրս չեկան, վերցրին ավարը և գնացին Մեղրի, ապա դարձան Հալիձոր ու այնտեղ օթևանեցին։

Եվ այն օրերին Դավիթ-Բեկը տեր Ավետիսին ուղարկում է Ջավնդուրում գտնվող զորականների մոտ, իսկ նրանք մերժում են Դավթին և չեն ընդունում նրա առաջարկը։ Եվ նա վերադառնում է Դավթի մոտ ու նրանց անհնազանդությունը հայտնում, և [պատմում], թե ինչպես իրենց վրա օսմանցի ոստիկան են կարգել։ Այնժամ Դավիթն իր տասնչորս զորավարներին հրամայում է գնալ բռնել նրանց և կապկպած իր մոտ բերել։ Եվ ելան պատրաստվեցին, ձի հեծնեցին ու գնացին հասան, հարվածեցին նրանց և բռնեցին, կապեցին նրանց զորավարներին ու օսմանցի զորականին և բերին հասցրին նրանց Դավթի մոտ՝ Հալիձոր։ Եվ երբ գերվածները ներկայացվեցին՝ առաջ գալով աղաչում, երդվում ու խոստանում էին, ասելով. «Այսուհետև քեզ կհնազանդվենք մինչև մահ»։ Եվ Դավիթը հավատաց, արձակեց նրանց կապանքներից, և երկու զորավարի իր մոտ թողեց, իսկ մյուսներին տվեց տեր Ավետիսի ձեռքը, որ լինեն նրա հրամանի ներքո։ Եվ նա տանելով նրանց Ջավնդուր, յուրաքանչյուրին արձակեց իր տունը։

Սրանից հետո Բաթալի խանն ու օսմանցոց զորքերը մի գիշեր գալիս և հարվածում են հայոց երեք գյուղեր, բռնում երեք զորավարի, տանում Պարկուշատ։ Եվ երբ այդ լսեց տեր

լսէր տէր Աւետիսն՝ վաղվաղակի զզօրսն ժողովէր, եւ յետ երկուց աւուրց յերկիրն Պարկուշատայ արշաւէր, եւ գիշերայն ի վերայ հասանէր, հարկանէր զհարուածս մեծամեծս, եւ զերկու թուրք զօրապետս ձերբակալ առնէր, եւ զամենայն ինչս եւ զստացուածս նոցա յաւար ածէր ի Ջավնդուր։

Եւ եղեւ ի ժամանակի յայնմիկ հիւանդանալ Դաւթի եւ մեռանել իսկ խաղաղութեամբ ի տան իւրում՝ ի Հալի ձոր, յամի Տեառն 1728ին, եւ ի թուին Հայոց ՌՃՀԷ, կեցեալ ամս վեց յիշխանութեան իւրում ի Ղափան։

Արդ՝ իբրեւ վախճանեցաւ Դաւիթ Պէկն, զօրականքն միաբանեալք՝ կացուցին ինքեանց իշխան եւ գլուխ զՄխիթար սպարապետն Դաւթի. բայց զի յետոյ եղեն անմիաբանք եւ տարաձայն յիրերաց (որ է քակտիչ եւ ապականիչ ամենայն հասարակութեանց), ուստի զօրացան ի վերայ նոցա Օսմանցիքն. եւ զկնի միոյ ամի՝ հասին պաշարեցին զբերդն Դաւթի բազում զօրօք։ Եւ անկաւ խռովութիւն մեծ ի մէջ զօրականացն որք ընդ Մխիթարայ էին՝ ի բերդ անդր, եւ առաքեցին երկու ոմամբ զտէր Աւետիսն առ փաշայն Օսմանցւոց, խօսիլ զխաղաղութիւն ընդ նոսա։ Եւ իբրեւ գնացին առ նոսա, նոքա հաճեցան հաւանեցան, զերդմունս երդուան՝ ամենեւին ոչինչ մեղանչել նոցա, եւ պահեցին առ ինքեանս զտէր Աւետիսն։ Եւ սոքա եւս յանձն առին ի վաղիւ անդր բանալ նոցա զբերդին դուռն, եւ ի նմին գիշերի փախեաւ Մխիթարն ի պարսպէ բերդին։ Եւ յորժամ այգ եղեւ՝ բացին նոցա զդուռն։ Այլ անօրէն զօրքն Օսմանցւոց իբրեւ ի ներքս մտին, մերժեցին անարգեցին զերդմունս եւ զդաշինս փաշայիցն, եւ զամենայն այր զօրաւոր կոտորեցին եւ զկանայս եւ մանկունս գերի վարեցին, ի մենարանս կուսանացն մտին եւ զամենեսեան գերեցին. ապա զպարիսպս բերդին քանդեցին կործանեցին, հարթ եւ յատակ արարին, եւ առին զկին եւ զորդիսն Մխիթարայ եւ զամենայն որ ինչ էր անդ, եւ թողին գնացին։

Բայց զտէր Աւետիսն փաշայն եթող ի Հալի ձոր։ Եւ իբրեւ նոքա չուեցին անտի, այլ զօրք Օսմանցւոց անդր հասին, որք իբրեւ կամեցան ունիլ եւ սպանանել զնա, նա փախուցեալ ի նոցանէ՝ անկաւ առ փաշայն, որոյ հրամանաւն առեալ զընտանիս իւր՝ գնաց բնակեցաւ ի Գաղատիայ։ Եւ էառ զներումն ի սրբազան Հայրապետէն Հռոմայ։

Ավետիսը, շտապ զորք հավաքեց և երկու օր հետո արշավեց Պարկուշատի երկիրը և գիշերով հարձակվեց, մեծամեծ հարվածներ հասցրեց և երկու Թուրք զորապետի ձերբակալեց և նրանց ամբողջ ինչքն ու ստացվածքը ավար տարավ Ջավընդուր։

Եվ պատահեց այն ժամանակ, որ Դավիթը հիվանդացավ և մահացավ իր տանը՝ Հալիձորում, խաղաղ պայմաններում, Տիրոջ 1728 և հայոց 1177 թվականին, Ղափանում իշխելով վեց տարի։

Արդ, Դավիթ-Բեկի վախճանվելուց հետո զորականները միաբանեցին, իշխանաց իշխան և գլխավոր կարգեցին Դավթի սպարապետ Մխիթարին։ Բայց քանի որ հետո անմիաբան և տարաձայն եղան (որ ամեն մի հասարակության քակտիչ ու ապականող է), ուստի օսմանցիներն ուժեղացան նրանցից և մեկ տարի անց մեծաթիվ զորքով հասան պաշարեցին Դավթի բերդը։ Եվ մեծ խռովություն ընկավ [այն] զորականների մեջ, որ Մխիթարի հետ էին՝ ամրոցում, և տեր Ավետիսին ևս երկու հոգու հետ ուղարկեցին օսմանցոց փաշայի մոտ՝ նրանց հետ խաղաղության բանակցություններ վարելու։ Եվ երբ գնացին նրանց մոտ՝ նրանք հաճեցին-հավանեցին, երդվեցին բնավ չմեղանչել նրանց դեմ, և իրենց մոտ պահեցին տեր Ավետիսին։ Սրանք նույնպես պարտավորվեցին հաջորդ օրը նրանց առջև բանալ բերդի դուռը, և այն գիշեր Մխիթարը փախավ բերդի պարսպից։ Երբ լուսացավ՝ դուռը բացին նրանց առջև։ Բայց օսմանցոց անօրեն զորքերը երբ ներս մտան՝ մերժելով անարգեցին փաշաների երդումներն ու դաշինքը և բոլոր զորավոր մարդկանց կոտորեցին, իսկ կանանց ու մանուկներին գերեվարեցին, մտան կուսակրոնների մենարանները և բոլորին գերեցին։ Ապա բերդի պարիսպները քանդեցին-ավերեցին, դարձրին հողին հավասար և առան Մխիթարի կնոջն ու որդիներին և ամեն ինչ, որ կար այնտեղ, և թողին հեռացան։

Բայց փաշան տեր Ավետիսին թողեց Հալիձորում։ Եվ երբ նրանք գնացին այնտեղից, օսմանցոց ուրիշ զորքեր հասան այնտեղ, որոնք երբ կամեցան բռնել և սպանել նրան՝ նա փախավ նրանցից, գնաց փաշայի մոտ, որի հրամանով վերցնելով իր ընտանիքը՝ գնաց բնակվեց Գաղատիայում։ Եվ Հռոմի սրբազան հայրապետից ներումն ստացավ։

*Այլ Մխիթարն փախուցեալ ի Նոցանէ՝ երթայր վերստին զօրաժողով լինէր ի Հայոց եւ ի Թուրքաց, զզօրսն Օսմանցւոցն խորտակէր եւ առնոյր զվրէժ ի Նոցանէ. վքազում ամուրս եւ զքաղաքս ի Նոցանէ թափէր, եւ երթայր զՈւրդուար քաղաք պաշարէր, եւ իբրեւ զքռամբ ածէր զայն ի Նոցանէ՝ զամենեսեան ի սուր սուսերի սատակէր, եւ զաւար բազում առնոյր ի Նոցանէ, եւ զհարիւր վաթսուն բեռինս ուղտուց։ Եւ անտի դարձ առնէր եւ երթայր ժամանակ ինչ ի մեծ բերդն Խնծորէսք բնակէր, եւ անդ յիւրոցն հարեալ թօփով՝ մեռանէր յամի Տեառն 1730, յետ երկուց ամաց իշխելոյն։ Զի նա յորմէ հետէ ի Խնծորէսք բնակէր. ասէին ցնա հայ բնակիչքն. Ե՛լ գնա աստի ի յամուրն քո. եւ նա ոչ լսէր նոցա։ Ուստի յաւուր միում հարին զնա ի պարսպէն եւ սպանին, եւ հատեալ զգլուխ նորա՝ առին գնացին ի Թավրէզ, առ փաշայն Օսմանցւոց։ Իսկ նա իբրեւ ետես զայն՝ զարմացաւ յոյժ, եւ ի սրտմտութիւն բարկութեան բրդեցաւ ի վերայ այնպիսոյ անզգամութեան նոցա, եւ ասէ. Ո՜վ անօրէնք եւ ամբարիշտք, զիա՞րդ իշխեցիք ի զուր տարապարտուց սպանանել զտէրն ձեր եւ զայդպիսի քաջ այր։ Եւ հրամայեաց հատանել զգլուխս ամենեցուն նոցա՝ որք տարան զայն, եւ ըստ արժանեացն՝ հատոյց զհատուցումն նոցա։*

*Արդ նոքա զայսպիսի մեծ անօրէնութիւնս գործեցին, թերեւս վասն այսորիկ՝ զի մի՛ զկիրս Հալի ձորոյ կրեսցին ի յՕսմանցւոցն, որպէս եւ նոքայն կրեցին վասն արգել լինելոյ անդ Մխիթարայ։ Իսկ զօրքն ամենեքեան ցրուեցան գնացին, ոմանք ի Նոցանէ՝ առ իշխանն Գուգարացւոց, եւ այլք՝ յայլուր։*

Իսկ Մխիթարը փախչելով նրանցից, գնաց վերստին զորք հավաքեց հայերից ու թուրքերից, օսմանցոց զորքերը խորտակեց և նրանցից վրեժ լուծեց, բազում ամրոցներ ու քաղաքներ նրանցից ազատեց և գնաց Ուրդուար քաղաքը պաշարեց, և ում որ նրանցից բռնում էր՝ բոլորին սուր ու սուսերով սատակում էր և նրանցից առնում շատ ավար՝ հարյուր վաթսուն ուղտաբեռ։ Այնտեղից դարձավ գնաց որոշ ժամանակ բնակվեց Խնձորեսքում, և այնտեղ յուրայինները խփեցին թնդանոթով, և մեռավ Տիրոջ 1730 թվականին, երկու տարի իշխելուց հետո։ Որովհետև որ օրվանից որ Խնձորեսքում էր բնակվում, հայ բնակիչները նրան ասում էին. «Այստեղից էլ գնա քո ամրոցը»,— և նա չէր լսում նրանց։ Ուստի մի օր խփեցին նրան պարսպից ու սպանեցին և, կտրելով նրա գլուխը՝ վերցրին գնացին Թավրիզ՝ օսմանցոց փաշայի մոտ։ Իսկ նա այդ տեսնելով՝ շատ զարմացավ և խիստ զայրացավ նրանց այդպիսի անզգամության պատճառով և ասաց. «Ո՛վ անօրեններ ու ամբարիշտներ, ինչպե՞ս համարձակվեցիք բոլորովին անտեղի սպանել ձեր տիրոջը և այդպիսի քաջ մարդուն»։ Եվ հրամայեց կտրել բոլոր նրանց գլուխները, ովքեր տարել էին գլուխը, և ըստ արժանավույն նրանց հատուցեց։

Արդ, նրանք այսպիսի մեծ չարիք գործեցին, թերևս այն բանի համար, որ օսմանցիներից Հալիձորին եկած պատուհասն իրենք ևս չկրեն Մխիթարի՝ այնտեղ հանգրվանելու պատճառով։ Իսկ բոլոր զորականները ցրվելով գնացին, նրանցից ոմանք՝ գուգարարոց իշխանի մոտ, մյուսներն այլուր։

## ՎԵՐՋԱԲԱՆ

Եւ ի յաւարտ բանիս, ասեմք թէ չա՛ր է արդարեւ եւ դժընդակ՝ անմիաբանութիւնն ընկերաց ի մէջ հասարակութեան, եւ նախադասելն զբարին եւ զօգուտն իւրոյ անձին՝ բարւոյ հասարակութեան իւրոյ։ Եւ յորում հասարակութեան եւ գտանիցի չարս այս, նոյնժամայն եղծէ եւ ապականէ եւ ընդունայնացուցանէ զնոյն հասարակութիւնն, թէ՛ տուն իցէ, թէ՛ քաղաք, թէ՛ ազգ իցէ, եւ թէ՛ անպարտելի մեծ թագաւորութիւն։ Զի՞նչ մեծագոյն քան զկայսերութիւն Մակեդոնացւոց եւ Հռոմայեցւոց, եւ ընդէ՞ր ի սպառ կործանեալ բարձան ի միջոյ. վասն զի պակասեցաւ ի նոցանէ միաբանութիւնն եւ սէրն հասարակութեան, որով զօրացեալ իսկ էին։

Ընդէ՞ր եղեւ եւ կործանումն ազգին մերոյ, երկրին մերոյ եւ թագաւորութեան. վասն զի բարձաւ միաբանութիւնն յիշխանաց եւ ի նախարարաց մերոց։ Զի որպէս միաբանութիւնն հոգի է եւ կեանք՝ ամենայն հասարակութեան, նոյնպէս եւ հակառակն սորին, այսինքն անմիաբանութիւնն՝ եղծիչ է եւ սատակիչ ամենայն հասարակութեան։ Արդ՝ ողորմեցաւ արդարեւ Աստուած ամենայն տանն Սիսակայ որդւոյն Գեղամայ, յարուցանել նոցա զԴաւիթ եւ զայլ ամենայն որդիս զօրութեանց, որք քաջացան եւ ի բաց վանեցին զամենայն ապականիչ երկրի իւրեանց։ Ո՜վ թէ ո՞րպէս զօրացան, ընդդէմ ելին մեծամեծ թագաւորաց եւ ապրեցան եւ անպարտելի մնացին ի նոցանէ՝ գթութեամբ վերին խնամոցն, մինչդեռ էին միաբանք ի միասին։ Բայց իբրեւ եհաս առ նոսա ապականիչ ախտս այս անմիաբանութեան, իսկոյն եղծան լուծան բաժանեցան եւ եղեն իբր զչեղեալս։ Զի մեռաւ Դաւիթ՝ ի քաջութենէ որոյ սարսէին ամենայն բռնակալք յուսացեալքն

# ՎԵՐՋԱԲԱՆ

Եվ խոսքիս ավարտին ասենք, որ արդարև չար է ու դըժընդակ՝ հասարակության մեջ ընկերների անմիաբանությունը և սեփական անձին օգտակարն ու բարին հանրության բանը և սեփական անձին օգտակարն ու բարին հանրության բարուց վեր դասելը։ Ո՜ր հասարակության մեջ ևս լինի այս չարիքը՝ իսկույն եղծում ու ապականում է և անիմաստ է դարձնում տվյալ հասարակությունը՝ լինի ընտանիք թե քաղաք, ազգ լինի թե անպարտելի մեծ թագավորություն։ Ինչն էր ավելի մեծ քան Մակեդոնացոց և Հռոմայեցոց կայսրությունները, և ինչո՞ւ իսպառ կործանվելով վերացան. որովհետև նրանց մեջ նվազեցին հասարակաց միաբանությունն ու սերը, որոնցով հենց զորացած էին։

Ինչո՞ւ եղավ նաև մեր ազգի, մեր երկրի և թագավորության կործանումը. որովհետև մեր իշխանների ու նախարարների միջից վերացավ միաբանությունը։ Քանի որ ինչպես միաբանությունը ամբողջ հասարակության հոգին ու կյանքն է, նույնպես և սրա հակառակը՝ այսինքն անմիաբանությունը, ամբողջ հասարակության քայքայիչ և կործանող է։ Արդ՝ Աստված իսկապես ողորմեց Գեղամի որդի Սիսակի ամբողջ տանը՝ տալով նրանց Դավթին ու մյուս բոլոր զորականներին, որոնք հերոսացան և վտարեցին իրենց երկրի բոլոր ապականիչներին։ Օ՜, ի՞նչպես զորացան, ընդդիմացան մեծամեծ թագավորներին և փրկեցին ու չպարտվեցին նրանցից՝ աստվածային խնամոց գթությամբ, քանի դեռ միաբան էին։ Բայց երբ նրանց հասավ անմիաբանության կործանաբար այս ախտը՝ իսկույն քայքայվեցին, լուծվեցին, մաշվեցին և դարձան չեղածի նման։ Որովհետև մահացավ Դավիթը, որի քաջությունից դողում էին իրենց ուժին ապավինած բոլոր բռնակալները։ Եվ հաջորդեց Մխիթարը, որ առ-

*ի զօրութիւնս իւրեանց։ Եւ յաջորդեաց Մխիթարն, որ իբր կորիւն առիւծու գոչեաց ի լերանց Սիւնեաց, եւ ի նմանէ սարսեցան ամենայն գազանք ի մորիս իւրեանց, եւ էջ եւ յափըշտակեաց զյափշտակութիւն ի միջոյ գազանաց, եհար խորտակեաց զեղջիւրս հպարտաց, հատոյց զհատուցումն եօթնապատիկ ի գլուխս թշնամեաց, են յամօթ արար զմեծամեծս հեթանոսաց, եւ յաւար էառ զփառս նոցա։ Այլ գտան անօրէնք ի մէջ ժողովրդեանն, որք ախտացեալ իսկ էին այսու ժանտ ախտիւ անմիաբանութեան, ուստի իշխեցին սպանանել զառաջնորդն իւրեանց, եւ մերժել ի հասարակութենէ իւրեանց զողորմութիւնն Աստուծոյ։*

յուծի կարյունի նման գոչեց Սյունյաց լեռներից, և բոլոր գավառներն իրենց որջերում սարսեցին նրանից, և իջավ ու գավառների միջից հափշտակեց (նրանց) զավթած ավարը, խլփեց խորտակեց բարձրամիտների գոռոզությունը, յոթնապատիկ հատուցմամբ թշնամիների գլուխներ կտրեց ու ամոթահար թողեց հեթանոսների մեծամեծներին, և ավար առավ նրանց փառքը։ Բայց ժողովրդի մեջ գտնվեցին անօրեններ (չարագործներ), որ նաև վարակված էին անմիաբանության այս զազրելի ախտով, ուստի հանդգնեցին սպանել իրենց առաջնորդին և հեռացնել իրենց հասարակությունից Աստծու ողորմածությունը։

ԱՆՈՒԱՆՔ ԶՕՐԱՊԵՏԱՅՆ ԵՒ ԶՕՐԱՅՆ ԴԱՒԹԻ

Այսոքիկ էին զօրավարք եւ զօրապետքն Դաւիթ Պէկին, մինչ էրն ի Շնհէր. Մխիթարն, մեծ Կորկին, վրացի Յօհաննէսն, Բանդուր Զաքարիա իշխանն, Փոքր Կորկին, Աւդանտել իշխանն, Պայինդուր իշխանն Վրացի (արդ սոքա Վրացի ասին, ըստ որում էին յերկրէն Վրաց, այլ ոչ եթէ էին ի Վրաց ազգէն, վասն զի Դաւիթ եւ ամենայն զօրավարք և զօրքն իւր էին ի յազգէ Հայոց), դարձեալ Ծատուրն, Ղարակէօզն, Թադէոսն, Եղիազարն, Յարութիւնն եւ այլն, այսքան զօրօք...

Որք ի Շնհեր բանկէին քաջ զօրավարին Դավթի՝ էին այսոքիկ. Պուան զօրապետն, Պակի զօրապետն, Մինասն, Ստեփաննոսն, եւ ընդ նոսա 550 զօր։

Որք ի Տաթեւ՝ էին այսոքիկ. Ղիչին, Այտին, Եսային, Տիրացուն, Սիմէօնն, Արկարն, եւ ընդ նոսա 400 զօր։

Որք ի Զանդուր գաւառին՝ էին այսոքիկ. Թորոսն, Վարդանն, Մարսաթան, Նուպարն, Թովմասն, Թուրինջն, Յօհաննէսն, եւ ընդ նոսա 2000 զօր։

Եւ ի Կալեր էր Պապ զօրագլուխն, եւ ընդ նմա 700 զօր։ Իսկ Ստեփաննոս Վարդանէսեան, որ ի տանէն Շահումեան, էր սպարապետն եւ տեղեկալն Պապայ, եւ էր սիրելի յաչս Դաւթի, վասն իւրոյ քաջութեան եւ ազնուականութեանն. ուստի ետ նմա յետոյ նաեւ զիշխանութիւն եւ զկալուածս երից Մելիքաց։

Եւ ի Մեղրի էին այսոքիկ զօրավարք. այսինքն՝ Կոստանդին, Յօհաննէսն, Սարին, Առաքելն, եւ ընդ նոսա 400 զօր։ Սոքա զդէմ կալան ութուտասան հազար զօրացն ի յամուր աւանն Մեղրեայ, եւ ի գիշերի միում սակաւուք ի վերայ յարձակեցան ութուտասան հազարացն, եւ ետուն նոցա զմեծամեծ հարուածս։

Յետ այսորիկ որդիքն Մաղաչուղին եւ Տիլէնչի մականուանելոյն էին, չորեք հաքիւր արամբք։

Զօրավարն Սիսանայ՝ հինգ հարիւրով։

Մէլիք Ղուչուն՝ երկու հարիւրով։

Աւշար Երէցն, որ եւ կոչի տէր Գասպար, երկերիւր յիսնաւ։

Ատոմ զօրավարն Պաղաբերդու՝ հարիւր յիսնաւ։

Ղազար զօրավարն Կուլբերդին՝ հարիւր տասամբ։

Սարգիս զօրավարն Շիվանու ձորոյն՝ երկերիւր յիսնաւ։

Մելիք Փարսադան ի Հալի ձոր՝ երկրին՝ երկերիւր յիսնաւ։

## ԴԱՎԹԻ ԶՈՐԱՎԱՐՆԵՐԻ ՈՒ ԶՈՐՔԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

Սրանք էին Դավիթ-Բեկի զորավարներն ու զորապետները, երբ Շենհեր ամրոցում էր. Մխիթարը, մեծ Գորգին, վրացի Հովհաննեսը, Բանդուր Զաքարիա իշխանը, Պայինտուր վրացի իշխանը (սրանք վրացի են կոչվում, որովհետև Վրաց երկրից էին, ոչ թե նրանց ազգից. քանի որ Դավիթն ու իր բոլոր զորավարները հայոց ազգից էին, լուսավորչական), դարձյալ Տատուրը, Ղարակոզը, Թադևոսը, Եղիազարը, Հարությունը և այլք, այսքան զորքով.

Դավթի՝ Շենհերում բնակվող քաջ զորավարները սրանք էին. Պուան զորապետը, Պակի զորապետը, Մինասը, Ստեփանոսը, և նրանց հետ 550 զորք։

Ովքեր Տաթևում էին՝ Ղիչին, Այտինը, Եսային, Տիրացուն, Սիմեոնը, Աբգարը, նրանց հետ՝ 400 զորք։

Եվ մելիք Փարսադանը Հալիձոր երկրում էր 250 մարդով։

Զավնդուր գավառում էին այս զորավարները. Թորոսը, Նուբարը, Վարդանը, Մարսաթանը, Թովմասը, Թուրինջը, Հովհաննեսը և նրանց հետ 2000 զորք։

Կալերում էր Պապ զորագլուխը և նրա հետ 700 զորք։

Իսկ Ստեփանոս Վարդանեսյանը, որ Շահումյան տնից էր, Պապի տեղակալն ու սպարապետը և սիրելի էր Դավթի աչքում՝ իր քաջության ու ազնվականության պատճառով, ուստի և Դավիթը նրան տվեց իշխանություն ու երեք մելիքների կալվածները։

Եվ Մեղրիում էին այս զորավարները. այսինքն, Կոստանդինը, Հովհաննեսը, Սարին, Առաքելը և նրանց հետ 400 զորք։ Սրանք դիմագրավեցին տասնութ հազարանոց զորքին Մեղրի բերդավանում և մի գիշեր քշվորով հարձակվեցին տասնութ հազարի վրա ու նրանց զորեղ հարվածներ հասցրին։

Սրանց հետ՝ Մաղաչուղի և Տիլենչի մականվանյալի որդիները 400 հոգով էին։

Սիսական զորավարը 500 հոգով էր։

Մելիք-Ղուշուն՝ 200-ով։

Ավշար էրեցը, որ կոչվում է նաև տեր Գասպար, 250 մարդով։

Բաղաբերդի Ադամ զորավարը 150 մարդով էր։

Կուլբերդի Ղազար զորավարը 110 մարդով էր։

Շիվանիձորի Սարգիս զորավարը՝ 250 մարդով։

Մելիք Փարսադանը Հալիձոր երկրի՝ 250-ով։

Եւ տէր Աւետիսն ի նոյն Հալիձոր՝ չորեք հարիւր վաթսուն եւ ութն արամբ։

Այս տէր Աւետիս արար զբազում մեծամեծ քաջութիւնս, որպէս եւ ի պատմութեանս իսկ տեսանի, զի էր կարի քաջ եւ արիասիրտ եւ զօրաւոր յոյժ՝ բանիւք եւ գործովք. եւ վասն այսորիկ նա յորմէ հետէ հեռացեալ ի հայրենի երկրէն պանդխտեղաւ ի Գաղատիայ, բազումք յորդորէին զնա ի հայրենի նորին գաւառէ՝ անդրէն դառնալ առ նոսա եւ պաշտպանել զերկիրն զայն. բայց նա հրաժարէր յաղագս պատուոյ իւրոյ քահանայական կարգին։

Եվ տեր Ավետիսը նույն Հալիձորում՝ 468 մարդով։

յս տեր Ավետիսը բազում մեծ սխրանքներ գործեց, ինչպես ատմության մեջ ևս երևում է. շատ քաջ էր ու արիասիրտ, և ոսքով հույժ զորավոր, և գործով, և սրա համար, երբ նա հեռանալով հայրենի երկրից պանդխտեց Գաղատիայում, շա-երը նրա հայրենի գավառից հորդորում էին վերադառնալ ի-ենց մոտ և պաշտպան կանգնել երկրին։ Բայց նա հրաժար-լում էր՝ քահանայական կարգի պատվին։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՂԱՓԱՆՑԻՈՑ

### ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ
**(Պատում Ստեփան Շահումեանի)**

### *ԹԷ Ո՛ՐՊԷՍ Ի ՎՏԱՐԻԼ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՊԱՐՍԻՑ ՀԱՅՔՆ ԽԱՓԱՆՈՒ Ի ԿՌՒԻ ԵԼԻՆ*

*Զկնի խմբելոյն Աղուանից ի վերայ Պարսից շահ Հուսէինին եւ սատակելոյ զնա, եւ զաթոռ թագաւորութեանն յափշտակելոյ, որ եղեւ 1170 թուականին Հայոց [=1721], ի ժամանակի յորժամ Լակզի թաթարքն ի յերկիրն Պարսից ի կողմանս Հայոց եւ Աղուանից արշաւեցին եւ զգիւղորէսն Գանձու եւ Շամախու ասպատակեալ յաւար առին, որք եւ զԱդուլեցին ի Մասուբէկեան տոհմէ զիշխանն Շամախու սպանին, եւ զամենայն զօրաւոր դիմակեացսն սատակեցին, եւ զժողովուրդըս երկրին եւ զկանայս եւ զմանկունս գերի վարեցին։ Զորոց մի ըստ միոջէ այժմ յայսմիկ վայրի չունիմք պատմել։ Եւ կամ թէ զի՛արդ զայսչափ չարիս տեսեալ Հայոց Դուզախ գաւառի, ընդդէմ ելին նոցա ի բաց վանել, գունդ կազմեցին, զզէն զգեցան, պատրաստեցան ի պատերազմ, ճակատեցան առ Թարթար գետովն՝ ընդդէմ ամենայն յարձակելոցն յասպատակութիւն երկրին իւրեանց. այսինքն՝ թէ՛ Լէկզի թաթարին եւ թէ՛ Պարսից։ Զայսոսիկ զամենեսեան յայսմ վայրի ոչ ունիմք գրել. այլ միայն զխմբելոյն Հայոց յեօթնաբերդ գաւառին Խափանու նղելոց ձեռն արկանեմք պատմել։*

*Յամին 1171 հայկազեանս թուականի [=1722], յորժամ լուան բնակիչք եօթնաբերդեան գաւառին Խափանու զասպատակն եւ զաւերումն Գանձու եւ Շամախու, Հայք եւ Պարսիկ առ հասարակ խռովեցան եւ զահի հարեալ սասանեալ | տագնապէին, եւ իբրեւ ամիսս երկուս եւ երիս առ միմեանս երթ-*

եկս առնել ի միմեանց կասկածէին։ Քանզի զանձինս իւ-
խանց առ հասարակ ի խնամոց ընդհանրական ընտանի
նամակալութեան բոլորովիմբ լքեալ» եւ լուծեալս տեսա-
էին, եւ վասն այսորիկ քաղաք ի քաղաքէ, ազգ յազգէ՝ եւ
շխան յիշխանէ զկասկածանս թշնամութեան կրեալ տագ-
ապէին, որպէս եւ գրեալ է՝ թէ «Յաւուրսն յայնոսիկ ոչ
ոյր թագաւոր Իսրայէլի, եւ այր իւրաքանչիւր զհաճոյս ա-
աց իւրոց առնէր»։ Սոյնպիսի աղէտս չարեաց եւ սոքա կրէին։
Ի սոյն աւուրս դառնութեան սասանութեան, Ստեփանոս
անուամբ ոմն ի կողմանցն Կալերու վանքեցի, ի Հայոց ազգէ,
խորհուրդ ի մտի դնէր անցանել ի Սիւնեաց գաւառն եւ գնալ
հասանիլ յաշխարհն Վրաց ի Մցխիթ քաղաք, առ Տեհնաւուզ
իշխանն Վրաց, եւ խնդրել ի նմանէ զայր մի տալ Խափանու
ի զօրագլուխ, եւ հրաման տալ նմա զօրաժողով լինելոյ, եւ
զերկիրն ի թշնամեաց պահպանելոյ. զի զայս ոչ ոք ի սու-
կականացն իւրովի առնել համարձակէր. եւ եթէ առնիցէր ոք,
իբրեւ ապստամբեալ ի տէրութենէ՝ ի բաց մերժիւր ի ժողո-
վրդենէն։ Այլ իշխանն Վրաց մեծ էր, եւ զայսպիսի զօրագլուխ
յայնմ գաւառի կացուցանել նմա անկ էր։ Իսկ արդ՝ թէ
որո՞վ մարթասցի զհայցուածն իւր առաջի իշխանին արժա-
նաւոր ցուցանել, խորհեցաւ սուտ գիրս յանուն յիսուն արանց
տանուտերանց Խափանու յօրինել եւ ըստ նմանութեան իւրա-
քանչիւր կնքոց նոցա զկնիքսն քանդակել, եւ զայն գիրն նո-
քօք կնքեալ հաստատել։ Եւ զօրութիւն բանից հայցուածոց
հրովարտակին այսպիսի ինչ էր. Տո՛ւր մեզ զայր մի՝ լինիլ
զօրագլուխ, որպէս զի քոյին հրամանաւ լիցի մեզ այս օրի-
նաւոր, եւ մեր զզօրսն հոգամք պատրաստել, եւ նոքօք ըզ-
գաւառն մեր ի թշնամեաց աներկեւան առնել։ Ել գնաց Ստե-
փանոս եւ եհաս ի Մցխիթ քաղաք, յանդիման եղեւ իշխանին
Վրաց, եւ գոյժ տուեալ նմա յաղագս նախայիշատակեալ քա-
ղաքացն՝ պատմեաց նմա զամենայն վտանգս եւ զխռովու-
թիւնս, եւ զահն եւ զերկիւղ ժողովրդեանն Խափանու, եւ մա-
տոյց նմա զհրովարտակն զոր արարեալ էր յանուն տանու-
տերանցն։ Հաճոյ թուեցաւ իշխանին հայցուածն իւր, զոր յա-
նուն նոցա հայցէր։
Եւ ետ զԴաւութ Պէկն, որ ի յազգէն Հայոց, երկու հազար
արամբ, եւ զիշխանութիւն ետ նմա զզօրս գումարել եւ պահել
զերկիրն Խափանու։

Եւ եւ նա յերեսաց իշխանին Վրաց եւ գնաց ժողովեաց իւր զօրս երկու հազար սպառազինաց եւ զքսան հարիւրապետս (որոց անուանքն են այսոքիկ. Ավթանդել, Կեօրկի, Կեօրկի փոքր կոչեցեալ, Ծատուր, Ղարակեօզ, Թաթոս, Եղիազար, Յարութիւն, եւ այլն, եւ Ստեփանոս ընդ նոսա), եւ եկն եմուտ նոքօք ի գաւառն Սիսնեաց։ Ազդ եղեւ գաւառապետին Նախիջեւանու՝ եթէ Դաւութ Պէկն երթայ ի Խափան, զօրաժողով լինիլ անդ։ Եւ նա երկոտասան հազարաւ ի վերայ Դաւութ Պէկին։ Իսկ նա իբրեւ լուաւ զայս, հրաման ետ զօրս ժողովել ի տանէն Սիսանայ, եւ ժողովեալ խմբեցին զչորս հազարս արանց, եւ զառաջին երկու հազարսն յաւելեալ ի նոսա՝ եղեն վեց հազար վառեալք ի պատերազմ, եւ նոքօք հանդերձ ճակատեցաւ ի վերայ Նախիջեւանու գետոյն՝ ընդդէմ Խանին։ Արդ՝ իբրեւ բախեցան ընդ միմեանս, զօրքն Խանին ի փախուստ դարձան, եւ սոքա զկնի նոցա պնդեալ փախստեայս տանէին ի 18 ժամէ աւուրն մինչեւ ց21 ժամն վանեցին։ Եւ ի 22 ժամուն փախստեայքն ամենեքեան ի միասին հաւաքեցան ի կրունկս ընդդէմ Հայոցն դարձան։ Իսկ Հայքն փախստեայք եղեն ի նոցանէ մինչեւ ի գետափն. 2200 մարդ գետակուր եղեն. իսկ Դաւիթ Պէկն, Ավթանտէլն, եւ երկոքեան Կօրկիքն ամրացան ի վէմ մի յափն գետոյն, եւ անտի մինչեւ ց2 ժամ գիշերոյն հասին ի Սիսան, եւ ամենայն վերծեալքն ի փախստէից ժողովեցան ի վերայ Դաւութ Պէկին։ Եւ անտի եկին յերկիրն Տաթեւ, եւ զզօրսն ժողովեալ առ ինքն՝ նստաւ ի Վանս։

Եւ իբրեւ լուան բնակիչքն Զանգրու զգալն Դաւիթ[1] Պէկին՝ դիմեցին առ նա, եւ զառաջինն դիմեաց Թորոսն, որ բնակէր ի Խորձոր, գալ եւ առնուլ ի նմանէ զիշխանութիւն զօրապետութեան. եւ գնացեալ ի Զանգուր՝ ժողովեաց զարսն տեղւոյն առ ինքն. մնաց անդ։

Յետ այսորիկ աւուրքն աւուրք գարնանային, եւ եկն հօտ մի ոչխարաց Սուլտանին, յորում էին 2000 ոչխար եւ 12 հովիւ, արածիլ ի յարտորայս նոցա. եւ զայս իբրեւ լուաւ Թորոս հարիւրապետն՝ վաղվաղակի առաքեաց զարս, եւ կոտորեցին զհովիւսն եւ առին զամենայն հօտն։ Արդ՝ զայս իբրեւ

---

[1] Այս եւ յաջորդ հինգ տողերը աւելի ուշ գրուած, տարբեր գրով, յետոյ առանձին թուղթով փակցուած են բնագրին մէջ։ Այդ պատճառով թերեւս գրուած է Դաւիտ եւ ոչ թէ Տաւութ, կամ Դորոս՝ փոխան Թորոսի։

լուաւ Պարկուշատու Փաթալի Սուլտանն եւ իւր եղբայրն Ա-
ղասի Սուլտանն, թէ Հայքն Ջաւանդուրեան ապստամբեալ են
ի Թուրքաց եւ կոտորեալք են զնոսա, գրեաց վաղվաղակի ի
Լեւազ Մանաճիր օղլի Սափի Ղուլոյն այսպէս, թե այս ինչ օր
երկոտասան Հազարու ելանեմ ես ի վերայ Հայոց, դու եւս
առ ընդ քեզ զամենայն զօրս Տաճկաց որք են ի Կենաուզն, եւ
դու այդի եւ ես աստի ելցուք ի վերայ Հայոց եւ ջնջեսցուք
զնոսա ի միջոյ: Այլ Սափի Ղուլին ոչ էառ յանձն. եւ ել Փաթա-
լի Խանն երկոտասան Հազարաւ ի վերայ Ջաւանդուրին. իսկ
նոքա առաքեցին յառաջագոյն ի Կամնադրոյ ի յԻշկերտոյ 150
սպառազէն, կալնուլ զկիրճս ճանապարհին, զի էր անտառա-
խիտ յոյժ, եւ դարան մտին նոցա անդ: Արդ՝ զօրքն Թուրքաց
իբրեւ Հասին անդր, զօրքն Հայոց արձակեցին ի վերայ նո-
ցա զհրացանս՝ մինչեւ ի դարձուցանել զնոսա ի կրունկս. եւ
իբրեւ դարձան նոքա, սոքա պնդեցան զկնի եւ կոտորեցին ի
նոցանէ չորս Հազար այր, եւ մնացեալքն փախեան ի Պարկու-
շատ: Բայց Հետեւեալ աւուրն, ել Լեւազ Սափի Ղուլին 300
սպառազէն արամբ, եւ եկն նենգութեամբ ի յԱփկու վանքն,
եւ գրեաց Իքաց իշխանացն՝ զի եւ նոքա եկեսցեն, որպէս զի-
զՄանլեւ եւ զամենայն գիւղորայս Հայոց, որք են անդ, աւե-
րեսցեն. եւ ոչ կամեցաւ Միրզասայիլն: Այլ զայս ամենայն
իմացեալ արքն Մանլեւու, առաքեցին արս ի Ջավունդուրն եւ
ասեն՝ թէ ել Սափի Ղուլին եւ զայս ինչ եւ զայս ինչ խորհե-
ցաւ առնել:

Յայնժամ ել անտի Թորոս Պէկն՝ Հինգ Հարիւր արամբ՝
ի գիշերի, եւ ի յառաւօտուն պահու յերեքտասաներորդ ժամու
եհաս ի յԱփկիս. եւ զայն տեսեալ Սափի Ղուլոյն՝ փախեաւ ի
նմանէ, եւ նա պնդեցաւ զկնի նոցա եւ եհար ի նոցանէ 80
այր. եւ ի ժամանակին յայնմիկ սոքա Հարին կոտորեցին զե-
րիս գիւղս Թուրքաց եւ առին զամենայն ինչս նոցա եւ դարձան
ի Մանլեւ: Արդ՝ իբրեւ լուր եղեւ բանս այս ի Քիս, ժողովե-
ցան ամենայն արք տեղւոյն այնորիկ ի միասին եւ եկին ար-
տաքս. եւ էջ առ նոսա Թորոսն ի գլխոյ Մանլեւին, եւ Հարեալ
ի դիմի՝ կոտորեաց ի նոցանէ զբազումս, եւ այլքն փախեան ի
Քիս. եւ նոքա զամենայն զկին եւ զորդիս իւրեանց Հաւա-
քեալ էին ի վերայ բարձրագոյն ինչ գագաթան մերձ ի շէնն.
Հրամայեաց Թորոս զօրացն ոչ պնդիլ զկնի նոցա, այլ երթալ
Հարկանել զքաղաքս նոցա, եւ առնուլ յաւարի զամենայն

ստացուածս նոցա, եւ զտունս նոցա այրել. եւ իբրեւ կատարեցին՝ դարձան անդրէն ի Մանլեւ, եւ երեք օր հանգեան անդ։ Եւ կոչեալ առ ինքն զՊապ Կալերեցի՝ զորդին Սրապիոնի, կացոյց զնա կառավար ի վերայ երկրին Կենայուզոյ, եւ ինքն դարձաւ ի Ջաւունդուրն։ Իսկ Պապայ գնացեալ անդ՝ զօրաժողով եղեւ, եւ եկն ի Կալերս։ Բայց վերոյ ասացեալ Սաֆի Ղուլին ի Լեվազու ձորն, որքան Թուրքի գիւղորայք գոյին, առեալ փախեաւ ի յՍուրդուվար, եւ մնաց միայն չորս գիւղ Թուրքաց. եւ զերիս դիւղսն՝ այսինքն Դամալի, Շրդի եւ Պիրենայ, ի յԱրձաւաքարէն, հրամանաւ Պապայ զօրապետին։ Հաւաքեցին ի Կալերն, եւ զնոսա ի մեծէն մինչեւ ի փոքր կոտորեցին, եւ զբոլոր ինչս նոցա առին եւ մնաց մի միայն թաղ՝ յորում էր 60 տուն. նոքա աղաղակ բարձին առ սոսա՝ թէ մեք հնազանդիմք ձեզ. եւ խնայեցին ի նոսա։

Յետ այսորիկ իբրեւ երկու ամիս ի վերայ անցին, եւ Սաֆի Ղուլին 500 արամբ ի յՍուրդուվարէն, եւ գիշերայն եկն ի Սայիպուն եւ եհար զերկուս գիւղս Հայոց, դարսն կոտորեաց եւ զկին եւ զորդիս նոցա վարեաց ի գերութիւն, եւ զինչս նոցա։ Զայս իբրեւ լուաւ Դաւութ Պէկն, կոչեաց զմի ոմն ի հարիւրապետացն՝ որոյ անունն էր Մխիթար, եւ առաքեաց զնա եւ զզօրս նորա ի վերայ նոյն մնացեալ 60 տանն Թուրքաց. եւ նոքա եկեալ զամենեսեան զնոսա ի տունս իւրեանս իբրեւ զոչխար մորթեցին, եւ առին զինչս նոցա. եւ անտի գնացին ի յանապատն Հալի ձորոյ, եւ տեսին զի այն պարսպեալ էր եւ ամուրս կանգնեալ. հրամայեաց եւ Պապայ հազարապետին գնալ ի ձորն Լեւազու, զի որքան Թուրք իցեն մնացեալ անդր՝ կոտորեսցեն, եւ Պապ հազարապետն, 1500 այր ընդ նմա, եւ եկին ի Լեւազու ձորն եւ ոչ զօք գտին անդր ի Թուրքաց, զի սակաւ ոմանք մնացեալ էին, եւ նոքա եւս փախուցեալս անկան ի յՍուրդուվարն։ Իսկ Պապ քննեաց եւ եգիտ անդ զբազում ինչս եւ ստացուածս, եւ առաքեաց զայնս ի Ջուվարու եկեղեցին, եւ կացոյց անդ պահապանս, եւ ինքն խաղաց գնաց ի Վայրիվարու գիւղորայսն Հայոց եւ թէ՛ | ի սոցանէ եւ թէ՛ ի Լեւազու զբազում ինչս եհան. եւ ի նոսա եգիտ զերիս[1] տունս Թուրքացեալս, եւ կոտորեաց զնոսա, եւ էառ զինչս նոցա եւ առաքեաց զնոսա ի Ջուվար, եւ այլ ոչ եւս մնաց Թուրք

[1] Ձեռ. դ3։

ի խափան։ Բայց միայն ի կողմանս Փուխուրութա սարին ժողովեցան Թուրքն ի Ջեւու բերդն, որոց գլուխն էր Ասլամազ Պէկն։ Զայս իբրեւ լուաւ Տաւութ Պէկն, գրեաց ի Հալուձորոյ առ Թորոս հազարապետն եւ առ Պապ հազարապետն, զի եւ նոքա ելցեն անտի զօրօք իւրեանց ի վերայ Հէնիցն Թուրքաց, եւ ինքն եւս եհաս ի վերայ նոցա յայնմ կողմանէ. մարտ եդին ընդ նոսա, հարին սատակեցին զնոսա մինչեւ ց23 ժամ աւուրն, եւ ոչ մի ոք զերծաւ ի նոցանէ։ Եւ անտի իբրեւ եկին ի Ղարաչիմէն, Թորոս Պէկն ել ընդդէմ Տաւութ Պէկին, եւ ասէ. Զքեզ ոչ խնդրեմ, այլ զերկիրն իմ ես պահպանեմ։ Եւ անտի դարձաւ ի Ջավունդուրն, Դաւութն գնաց ի բերդ իւր, եւ Պապ՝ ի Կենայուզն։

Արդ յետ այսց բանիցս, Թորոս ժողովեաց յիւր երկրէն վեց հազար զօրս՝ առ ի գնալ ի վերայ Ուրդուվարայ։ Յայնժամ Մելիք Ֆռանկուլն ի Նոցիվանակու գրեաց առ Թորոս նենգութեամբ այսպէս, թէ Փաթալու Սուլտանն լուեալ է թէ դու ելանելոց ես ի վերայ Ուրդուվարին, ինքն եւս զօրս կազմեալ է եւ պատրաստեալ, զի յորժամ դու ելանիցես այդի, նա մտեալ յերկիրն քոյ՝ աւերեսցէ։ Ուստի յոյժ բարւոք առնես, եթէ յառաջ եկեսցես ի վերայ Պարկուշաթայ, զի եւ ի մեր Պարկուշաթայ Հայոցն քեզ բազում օգնութիւնս | առնեմք։ Իսկ նա հաւատաց, եւ ել միամտութեամբ եւ գնաց մինչեւ Եղայ հորթ, որ է ի սահմանս Պարկուշաթայ, ինքն եւ վեց հազար զօրք ընդ նմա։ Եւ եկն Ֆրանկուլն եւ երկու հազար զօրք ընդ մնա, եւ եկաց ի մի կողմն զօրացն Թորոսին։ Եւ եւ Փաթալու Սուլթանն, ինքն եւ եղբայրն իւր Աղասի Սուլթանն եւ տասնեւութն հազար զօրք ընդ նմա, եւ եկաց դէմ յանդիման զօրացն Թորոսին, սոքա մարտ եդին ընդ նոսա եւ հարին խորտակեցին զճակատն Թուրքաց. եւ իբրեւ տանէին զնոսա փախստականս առաջի իւրեանց, Փռանկուլն զարս արձակեաց զկնի Սուլտանին եւ ասէ, Զի՞նչ գործէք, զիա՞րդ փախչիք, դարձարուք ի կրունկս, զի ես ընդ ձեզ եմ. դուք ի յառաջոյ եւ մեք զկնի սոցա խորտակեսցուք զսոսա։ Եւ արարին այնպէս. եւ կոտորեցին զզօրսն Թորոսի, եւ զԹորոս սպանին, եւ ի վեց հազարացն՝ միայն հազար չորս հարիւր մարդ զերծաւ, եւ այլքն մեռան, եւ փախստականքն եկին ի Ջավունդուրն։

Իսկ Փաթալու Սուլտանն կամեցաւ գալ մտանել ի Ջա-

վունդուր երկիրն, եւ աւերել զայն։ Բայց Նուպար զօրապետն նստաւ յերկիրն Թորոսի, եւ առաքեաց առ Պապ զօրապետն զարս եւ ասէ. Դու ինքնին գիտես զի ահա կորեաւ զօրքն մեր, եւ արդ յարուցեալ գայ ի վերայ մեր Փաթալու Սուլտան, մեզ յօգնութիւն հասիք։ Եւ նա առաքեաց առ նոսա երկու հազար զօրս ի Ջավունդուրն՝ յօգնութիւն Նուպարին։ Իսկ Փաթալու Սուլտանն իբրեւ լուաւ թէ յօգնականս եռուն Նուպարին ի Կենաուզայ, դարձաւ յետս։ Արդ ի զօրացն Պապայ որք եկին ի Ջավունդուրն՝ երկու զօրապետք ապստամբեցան ի Պապայ, եւ եկեալ ի Լիչքին զօրաժողով եղեն եւ կամեցան ունել զՊապ. եւ նա փախեաւ անտի, եւ ասեն՝ մեք կառավարեմք զերկիրն. զայս իբրեւ լուաւ Տաւութ Պէկն՝ առաքեաց առ նոսա զԿօրկի զօրապետն 200ով եւ հաշտեցոյց զնոսա, եւ վերստին կացոյց զՊապ ի վերայ նոցա, եւ զվերոյ յիշեալ Լեւազու առեալ աւարսն բաժանեցին ի մէջ իւրեանց։

Արդ՝ յետ այսորիկ իբրեւ մի կամ երկու ամիս ի վերայ անցին, եկն լուր առ Պապ ի յՈւրդուվարայ, թէ Թուրքն վերըստին զօրաժողով եղեւ առ ի գալ աւերել զխափան։ Յայնժամ խորհուրդ արարին ծերքն Կենաուզայ՝ զի մարդիքն գիւղօրէից բոլոր հաւաքիցեն ի երկու գիւղս[1], ի Կեսն վանք կոչեցեալ շինէն մինչեւ ի Կալեր, եւ ի կողմանցն Կալերու մինչեւ ի Մանլեւ եւ մինչեւ ցԱփքիս։ Եւ իբրեւ ժողովեցին զամենեսեան զնոսա անդ, ի հետեւեալ աւուրն տեսին զի Սափի Ղուլին եւ որդին Ղազու Ուրդուվարեցւոյ եւ որդին Շահիսլամին եւ ութ հազար զօրք[2] ընդ նոսա անցեալս առ նոսա ի յԱլանկեզայ սարոյն եւ եկեալս ի վէմն Պուզայ։ Արդ՝ իբրեւ լուաւ Պապ զանցանելն նոցա, ել ընդ առաջ նոցա երկու հազարաւ, եւ ետես ընդ այն՝ զի զօրքն թշնամեաց բազումք են յոյժ, դարձաւ յետս. իսկ ժողովուրդք գիւղօրէիցն որք հաւաքեալք էին ի վերոյ ասացեալ տեղւոյ, ամենեքեան անցին ի սարոյն խաչպուլու ի հողն Ջավունդուրին, եւ այլազգիքն յառաջ խաղացեալ եկին մինչեւ ի Դաշտատուն եւ զբոլոր գիւղօրայսն քանդեցին։

Իսկ Տաւութ Պէկն իբրեւ լուաւ այնպիսաբարն զալն այլազգեաց, ել երկու հազար եւ ութ՝ հարիւր արամբ, եւ էջ ի

---

[1] Ձեռ. ի 2 գիւղս։

[2] Ձեռ. ը հազար զօրք։

աշտ անդր. եւ զայս լուեալ այլազգեացն փախեան ի յՈւր-ուվար։ Այլ Տաւութ Պէկն իբրեւ լուաւ՝ թէ Պապ սակաւ ո-ամբ է կացեալ, բարկացաւ յոյժ ի վերայ նորա եւ ասէ. Մի-ղէ չիցէ՞ բաւական զի փախեաւ ի պատերազմէ, եւ արդ ոչ ւս կամի գալ առ իս։ Եւ ել անտի Տաւութ Պէկն եւ եկն ի Կա-պրս, եւ կալեալ անդ զՊապ՝ տարաւ ընդ ինքեան, եւ անցեալ ընդ խաչպօրու սարոյն՝ եկն յԻշկեւտ, եւ անդ գլխատեաց զնա, եւ զտուն նորա աւար էառ եւ երեք օր նստաւ յԻշկեւտ, եւ յետ երից աւուրց գնաց ի Գեմանցու դաշտն։

Եւ այլազգիքն իբրեւ լուան թէ Տաւութ Պէկն անցաւ ի Ձա-վունդուրն ,ել Սափի Ղուլին եւ որդին Ղազու եւ որդին Շահ-խալամին երկոտասան հազարաւ, եւ անցին յԱլանկեզայ սա-րոյն ի Կենէուզն եւ զբոլոր գիւղորայսն այրեցին. եւ լուր է-հաս Տաւութ Պէկին վասն այսր ամենայնի ի Ձաւունդուրն, զի յաւուրսն յայնոսիկ բնակէր նա ի Ծավն, եւ ել չորս հազա-րաւ ի վերայ այլազգեացն, եւ եգիտ զնոսա ի Նիշքին որ է յանկոյս Ղօղղօղ գետոյն։ Իսկ Թուրքն բնակեալ էր ի Նշկին. իբրեւ եւ տեսին զնոսա՝ ելին արտաքս եւ եկին ի Գողթ, ոչ է գե-տափն...[1] եւ ոչ ետուն անցանել զգետն. եւ սոքա աստի եւ նոքա անտի մարտ եդեալ կռուէին յառաւօտէ մինչեւ ի 24 ժամ աւուրն, մինչեւ ի գալն նոցա ի Ջիպանդ ի գլուխն դաշ-տուն։ Եւ ի գիշերի Տաւութ Պէկն էանց ի Հալի ձորն։ Եւ ի յա-ռաւօտուն պահու, նոքա | իբրեւ տեսին թէ Տաւութ Պէկն ոչ է անդ, եւ ոչ ուստեք էր նոցա այնուհետեւ երկիւղ, անցին ի Գուրամ, եւ եկին աւար հարկանելով զկողմանս Գուրամու՝ մինչեւ ի Մեղրայ։ Արդ՝ մինչչեւ եկեալ էր նոցա ի Մեղրայ, մեղրացիքն վասն զի լուեալ էին զգալ նորա ութուտասն[2] հազարաւ, ժողովեցան արք քաղաքին յերիս թաղս։ Իսկ զօր այլազգեացն դիմեաց զառաջինն մտանել ի փոքրիկ թաղն, եւ սոքա ի վեր առին զկամուրճն, կալան զանցս գետոյն զինուք եւ թուփանկովք, եւ նոքա լքան անցանել զգետն։ Եւ յայնմ վայրի որք մնացին ի փոքրիկ թաղն՝ լուրս առաքեցին արանցն Գուրհամոյ...[3]։ Այլազգիքն դիմեցին ի մեր փոքր

---

1 Ձեռագրին մէջ՝ մէկ բառի տեղ պարապ թողուած է։

2 Ձեռ. ԺԸ։

3 Ձեռագրին մէջ՝ երկու բառի տեղ պարապ թողուած է։

թաղն. ուստի մինչեւ ցերկու օր եթէ յօգնութիւն մեզ ոչ հասանիցիք՝ գերիմք ի նոցանէ։ Ես Ստեփաննոս Վարթանէս Շահումբանէս ի գիշերայն ելեալ գնացի ի Ջավրնդուր առ զօրապետն Պայինտուր, եւ յայտ արարի նմա զամենայն նեղութիւնս եւ զանձկութիւնս Մեղրացւոց, եւ նա առժամայն հրաման տայր վաղվաղակի գալ ժողովիլ առ նա ամենայն զօրականացն. եւ եկին խմբեցան 2000 քաջ սպառազէն ի Ջավրնդրու եւ ի Գուրհամայ, եւ ել նոքօք եւ գնաց բանակեցաւ այն գիշեր ի Մազրան աւանն, եւ Ստեփաննն ընդ նմա. եւ մերձ յառաւօտուն պահու՝ ելին կազմեցան եւ անցին գնացին ի կողմանցն Ափկու, եւ հասին ի Մեղրի։ Իսկ զօրքն Թուրքաց ի բանակէ անտի իբրեւ զբազմութիւն զօրացն Հայոց տեսանէին՝ ոչ հաւատային թէ յօգնութիւն իցեն նոցա հասեալ յայլ ուստեքէ։ Այլ ասէին թէ Մեղրացիքն | կանանց իւրեանց զգեցուցեալք են զգեստ առնացի եւ զարդ պատերազմի. եւ տուեալ զբազում սուտ դրօշակս ի ձեռս նոցա, առ ի երկեցուցանել զմեզ։

Արդ մինչ չեւ էին հասեալ օգնականքն Հայոց ի Մեղրի, քաջ եւ արի սպառազէնքն Մեղրացւոց գործ քաջութեան ի նմին գիշերի գործեցին, զի անցեալ յայնկոյս գետոյն յեղակարծումն ժամու՝ ի մէջ բանակի թշնամեացն, յարձակեցան եւ զբազումս ի նոցանէ ի սուր սուսերի սատակեցին, մինչեւ եւ զորդին Շահ Իսլամին երկու հազարաւ ի փախուստ արկին ի յՈւրդուար քաղաք. այլ զի սակաւք էին՝ ոչ կարացին ի սպառ ջնջել եւ անհետս առնել զնոսա անտի. դարձան անդրէն ի Մեղրի։

Իսկ օգնականքն Հայոց իբրեւ գային ի մեծ թաղն Մեղրու հասանէին, Մեղրացիքն վաղվաղակի նոցա զկերակուր պատրաստէին։ Յայնժամ արգելու զնոսա Պայինտուրն, որ էր իշխան եւ զօրագլուխ ամենայն զօրուն եկելոյ ընդ նմա, եւ ասէ. քաւ լիցի մեզ ուտել, մինչ չեւ իցեմք վանեալք ողորմութեամբն Աստուծոյ զթշնամիսն մեր։ Զի խորհուրդ եւ ջան էր նորա գործ պատերազմի փութով վճարել. վասն զի միով աւուրբ յառաջ քան զայն, այլազգիքն գրեալք էին յայնկոյս գետոյն Երասխայ զօրականացն Թուրքաց՝ գալ օգնութիւն հասանել նոցա. եւ նոքա ի պատրաստի էին բազում գնդաւ գալ հասանիլ ի թիկունս նոցա։ Ուստի վաղվաղակի հանդէս առնէր ամենայն զօրուն եկելոյ ընդ նմա եւ որք ի յամրի անդ

ն, եւ կարգէր կազմէր, եւ զնոսա յերիս գունդս բաժանէր, առ յիւրաքանչիւր գունդ 860 սպառազէն վառեալ։ Ապա ի եշտասաներորդ ժամու աւուրն՝ մի գունդն խրախոյս բարեալ մղիլ սկսաւ ի մէջ զօրացն Թուրքաց, յաջ եւ ահեակ կոորելով. եւ այլ երկու գունդքն յաջմէ եւ ահեկէ զօրաց ճչնաեաց՝ ձայն տուեալ ղաղաղակ բարձին, ի վերայ յարձակեան, եւ ի 16 ժամէ աւուրն մինչեւ ց23 ժամն ի մէջ առին բազմութիւն զօրացն անօրինաց, եւ հարին կոտորեցին ի ոցանէ աւելի քան զմետասան հազար այր. ի սոցանէն անան յերեւելի անձանց Լէվազեցի Մուրում Քալանթարն եւ այլք բազումք, եւ մնացեալքն մազապուրծ անկան ի յՈրդուար քաղաք։ Եւ ձերբակալ արարին զՈւրդուարեցի Հաճի Շահին, որ էր այր երեւելի ի մէջ ամենեցուն նոցա, եւ առին զամենայն զկահ զկարասի բանակի նոցա, զզէն զսուր եւ զամենայն գործիս պատերազմին, եւ զամենայն ղառ եւ ղաար նոցա։ Եւ եղեւ ուրախութիւն մեծ ամենայն բնակչացն խափանու։

Իսկ զՀաճի Շափին՝ զօր ըմբռնեցին, կամէր Պայինտուրն զօրագլուխն ածել զնա առ Դաւիթ, բայց իշխանք Մեղրացեայ աղաչեցին զնա թողուլ զՀաճին անդ առ նոսա. եւ նա շնորհեաց նոցա։ Եւ եդին զնա ի պահեստի ի տան տեառն Ներսիսի։ Եւ զօրականքն ամենեքեան գնացին իւրաքանչիւրքն ի տունս իւրեանց, եւ շինականքն Գուրհամայ դարձան գնացին եւ բնակեցան իւրաքանչիւր ի տունս իւրանց, որք վասն ահի հէնիցն անցեալք էին յերկիրն Ջավնդուր, որպէս ի վերոյ ասացաք։

Յետ այսորիկ իբրեւ մի ամ ի վերայ անցանէր, եղբայրն Երվանու խանին բազում զօրօք կուտէր առ ի գնալ յօգնութիւն եղբօրն իւրոյ, որ պաշարեցեալ էր ի յԵրեւան քաղաքի ի զօրացն | Օսմանցւոց. արդ՝ սա իբրեւ բազում զօրօք ի յՈւրդուվար քաղաք գայր հասանէր, ամենայն մահմետականքն քաղաքին յառաջ մատուցեալ բողոք բարձին զհայոցն Մեղրեայ, եւ ասեն. Դատ արա ընդ մեզ եւ ընդ նոսա, զի նոքա կոտորեցին կորուսին զամենայն այր քաղաքիս։ Եւ նա առաքեաց զծառայսն իւր ի Մեղրի՝ կոչել առ ինքն զոմանս ի գըլխաւոր իշխանացն, առ ի գիտել զպատճառն այնպիսւոյ աղմըկին. իսկ իշխանքն Մեղրեայ իբրեւ զայն լսէին, տագնապէին վարանէին ի միտս իւրեանց։ Ի միասին գային ժողով-

էին խորհուրդ խորհէին եւ ասէին. զի՞նչ արասցուք, զի թէ երթայցեմք՝ մեծ վտանգ է մեզ, եւ թէ ոչ երթայցեմք՝ վիշտ վտանգի է մեզ եւ ժողովրդեանս. վերջապէս վասն հասարակի օգտի հաճեցան ոմանք. ի ծերոցն զվտանգ մահու յանձն առնուլ, եւ երթալ առ խանն։ Եւ իբր մտին սոքա ընդ ծառայըսն խանին ի յՈւրդովար, քաղաքացիք առ հասարակ դիմեցին ի վերայ նոցա՝ սպանանել զնոսա. բայց ծառայքն խանին ոչ ետուն թոյլ, մինչև ածին կացուցին զնոսա առաջի խանին, եւ քաղաքացիքն զհետ նոցա երթային մինչեւ ի դուռն խանին. եւ իբրեւ յանդիման եղեն նմա, սկսան քաղաքացիքըն աղաղակել վերստին եւ ասեն. Դատ արա ընդ մեզ եւ ընդ Մեղրացիսն, զի կորուսին սպառեցին զմեզ։ Եւ ի հարցանելն խանին զՄեղրացիսն, պատասխանի առնէին նմա՝ թէ մեք զոչ ոք ի դոցանէ ի զուր տարապարտուց սպանաք, եւ ոչ ումեք մեղաք, այլ դոքա բազում զօրս կուտեցին եւ զբազում գիւղորէս մեր կոտորեցին կործանեցին եւ ի գերի վարեցին. ապա ի զուր տարապարտուց եկի[ն] պաշարեցին զմեզ եւ կամեցան բնաջինջ առնել զմեզ, եւ մեք առ ի պաշտպանել զմեզ՝ ընդդէմ դարձաք դոցա եւ ի բաց վանեցաք. եւ արդ՝ հարց ցդոսա թէ զի՞նչ մեղաք, զո՞ սպանաք, ո՞ւմ ընդդէմ դարձաք արքունեաց, զի դոքա եկին պաշարեցին զմեզ եւ կամեցան ջնջել զմեզ։ Յայնժամ ասէ խանն զՈւրդովարեցիսն. Ո՞վ հրամայեաց ձեզ ելանել ի վերայ նոցա առ ի կողոպտել եւ կորուսանել զնոսա. Եւ նոքա ափիբերան եղեն եւ ոչ կարացին տալ առ այն պատասխանի։ Ապա ասէ ցնոսա խանն. Ո՞վ եղեւ ձեզ առիթ եւ առաջնորդ ելանելոյ ի վերայ նոցա։ Եւ նոքա ասեն Սափի Ղուլին Լվազեցի՝ որդին Մանիշարի, եւ որդին Ղազու Ուրդովարեցի, եւ որդին Շահ Իսլամին։ Եւ կալեալ խանին զՍափի Ղուլին, խրատեաց զնա խստագոյն գանիւք, եւ էառ ի նոցանէ զտուգան, եւ զՄեղրացիսն արձակեաց խաղաղութեամբ ի տեղիս իւրեանց, եւ ինքն չուեաց գնաց անտի։

Ապա այնուհետև սկսան Ուրդովարեցիքն առնել զհաշտութիւն ընդ Մեղրեցիսն եւ խնդրեցին արձակել նոցա զՇաճի Շափին, եւ նոքա եւս խնդրեցին ի նոցանէ արձակել զգերիսն, զորս ի գիւղորէին ըմբռնեցին, եւ յանձն առին արձակել զնոսա։ Յայնժամ գրեցին Մեղրացիքն առ զօրագլուխսն Ագուլեցւոց, որպէս զի ընկալցին ի յՈւրդովարեցւոցն զեօթանասուն

նձինս Հայոց գերեցեալս ի նոցանէ, եւ ազդ արարեալ ին-
եանց թէ ընկալան զնոսա, որպէս զի եւ ինքեանք արձակես-
ն զՀաճի Շափին, եւ արարին այնպէս. եւ սոքա արձակեցին
Շափին, եւ եղեւ այնուհետեւ խաղաղութիւն ի մէջ նոցա։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ
(Պատում Տէր Աւետիք քահանայի)

Ա.— Արդ՝ եկեալ Դաւիթ Պէկն ի խափան 412 արամբ բա-
ակեցաւ ի տեղին որ կոչի Իջդէփէ, եւ անդ մարտեաւ զառա-
ինն ընդ Ղարաչօրլու, կոչեցեալ Թուրքաց, եւ յաղթեաց նոցա։
ւ ապա եկեալ բնակեցաւ ի յամուրն որ կոչի Շնհեր, եւ կո-
եաց առ ինքն զառաջնորդն Տաթեւու՝ զԿիրակոս վարդապե-
ոըն, եւ զԳաբրիէլ վարդապետն եւ ժողովեաց ի վերայ իւր
լարսն տեղւոյն, եւ ասէ՝ թէ եկեալ եմ աստ առ ի բառնալ
զԹուրքն ի միջոյ. եւ գնացեալ եհար զգիւղորէսն Թուրքաց, եւ
բերեալ զինչս եւ զստացուած նոցա՝ եկեր։

Բ.— Եւ զայն տեսեալ երեսուներկու ծխանշիրն կոչեցեալ
ցեղն Թուրքաց, եկին միաբան ի միասին ի Շնհեր՝ ի վերայ
Դաւիթ Պէկին։ Իսկ նորա եւս ժողովեալ առ ինքն զարսն Շըն-
հերու, եւ ընդ առաջ նոցա ի յԻջդէփէ, եւ անտի ետես զզօրս
թշնամեացն իբրեւ զվեշտասան հազարս, եւ ընդ ինքեան ա-
ռեալ զարս սպառազէնս 400, յուսացեալ յԱստուած՝ գոչեցին
առ նա, եւ հարեալ ի դիմի նոցա յաւուրս երիս՝ խորտակեցին
զնոսա, եւ առին զամենայն ինչ նոցա, զզէն եւ զերիվարս նո-
ցա։ Յետ այսորիկ առաքեաց նա զՄխիթար զօրապետն իւր ի
շէնսն որ կոչիւր Քուրդլար. եւ եկեալ նորա եհար կոտորեաց
զամենայն բնակիչս նորա զայլազգիս, եւ էառ զամենայն ինչս
նոցա եւ դարձաւ։

Գ.— Ընդ այնու ժամանակաւ էր ոմն Մելիք Տաթեւու ու-
րացող, որ յառաջն կոչիւր Դաւիթ, յետոյ ուրացեալ զՔրիս-
տոս հանդերձ տամբն իւրով՝ կոչեցաւ Պաղեր, եւ որդիք նորա
ամենեքեան եղեն Շահ | Ղուլի։ Սա ժողովեալ զարսն Տաթե-

ու առ ինքն. եւ կանգնեալ անդ ամուրս, խորհէր տալ պատերազմ ընդ Դաւիթ Պէկին։ Իսկ նորա լուեալ զայն ամենայն, եւ վաղվաղակի ի վերայ նորա ի պատերազմ, եւ պաշարեալ զամուրս նորա՝ յետ երկուց աւուրց էառ զայն, եւ կալեալ զնա էած ի Շնհեր, եւ զամենայն ստացուածս նորա։ Եւ հրամայեաց նմա զաւուրս երկոտասան, ի մէջ եկեղեցւոյն, յանդիման ամենեցուն, ասել այսպէս բարձր ձայնիւ թէ՝ Լոյսն Լուսաւորչի հաւատոյն, վա՜յ ուրացողին. եւ ապա եհատ զգլուխ նորա։ Եւ ինքն եկեալ նստաւ ի Տաթեւ։

Դ.— Արդ՝ զայս ամենայն իմացեալ ամենեքեան որք բնակեալք էին ի Ձաւնդուրն, զառաջինն եկն առ նա Թորոս զորապետն, եւ ընդ նմա հնգետասան այր։ Եւ ետ նմա զիշխանութիւն զորապետութեան եւ առաքեաց զնա, եւ ընդ նմա ըզՊայնտուր սպարապետն ի Ձաւնդուր։ Յետ այնորիկ դիմեցին առ նա զօրօք իւրեանց որդիքն Մաղալ Մելիքին Ջուղայու, որ եւ կոչի հին Ջուղայ՝ ի Գողթան գաւառի, եւ որդիքն Տիլէնչի մականուանելոյն, եւ սոքա ամենեքեան զային խառնէին եւ յաւելանային ընդ զօրսն Դաւիթ Պէկին, իբր երկուս հազարս արանց զօրաւորաց։ Գրեաց Դաւիթ պէկն նաեւ առ Մելիք Փարսադան եւ առ փեսայ նորա տէր Աւետիսն՝ գալ ի յօգնութիւն ինքեան։ Վասն զի զայն ամենայն լուեալ եւ տեսեալ Պարսիցն, որք շուրջ էին զնոքօք կուսակալք նաեւ կուսակալն Խափանու, Խանն Պարկուշատու՝ որ կոչի Բաթալի Խան, եւ Խանն Ղարադուզ երկրին. սոքա ամենեքեան եկեալ ի միասին, ելին ի վերայ Ձաւնդուր գաւառին՝ ութ եւ տասն հազարաւ, յաւուր քառասնորդաց պահոց՝ ի տօնի սրբոյ Լուսաւորչին։

Ե.— Իսկ Հայոցն յուսալով յողորմութիւնն Աստուծոյ ի գիշերի յարութեանն Քրիստոսի դիմեալ ի վերայ բանակի նոցա՝ հարին կոտորեցին զնոսա, եւ առին զբանակն, եւ զայլսն փախըստակա՛նս արարին։ Յետ այսորիկ եկին մելիք Փարսադան, եւ տէր Աւետն ի յողջոյն Դաւիթ Պէկին։ Իսկ նորա բարկացեալ ի վերայ նոցա, եւ ասէր՝ ընդէ՞ր ոչ ելիք յօգնութիւն մեզ, եւ հրամայեաց տանիլ զնոսա ի Շնհեր, եւ անդ արկանել զնոսա ի բանտ, եւ էին նոքա զաւուրս հն..ետասան ի բանտի անդ։

Զ.— Եւ դէպ եղեւ յաւուրսն յայնոսիկ, Յոհաննէս (պետն Խուզարացւոց)[1] գալ ի կողմանս յայնոսիկ՝ յիսուն եւ վեց հազար հայազունդ զօրօք, պաշարել զանմատչելի բերդն Որոտալայ, եւ ի չկարել առնուլ զայն ի Թուրքաց, գայ ի Շնհեր եւ յանէ անդ զտէր Աւետն եւ զաներ նորա ի կալանս. ապատէ զնոսա եւ առաքէ Դաւիթ Պէկին ի Հալիձոր։ Եւ ինքն եկեալ ի Տաթեւ՝ առնու զգանձն Դաւիթ Պէկին եւ դառնայ ի տեղի իւր։ Իսկ Դաւիթ Պէկին ընկալեալ զՄելիք Փարսադան՝ կացոյց զնա յիւրում կարգի զօրապետ ի վերայ երկու հարիւր վաթսուն եւ վեց զօրաց։ Եւ զտէր Աւետն ի վերայ չորեքհարիւր քառասնից։ Եւ զնոսա եւ զամենայն զօրս իւր կուտեալ՝ ել գնաց նա ի Ղարաչիմէն եւ բանակեցաւ անդ, եւ անտի հրեշտակս արձակեաց ի Զանգուր, ի Մեղրի եւ ի Կենաւուզ, գալ ժողովիլ առ նա, եւ եկին հասին զօրապետքն յամենայն կողմանց։

Է.— Բայց Թորոս սպարապետն ընդդէմ եկաց նմա ի կռիւս. եւ միջնորդ մտեալ ի մէջ երկուցն՝ հաշտեցուցին զնոսա։ Եւ ժողովեալ զնոսա անտի՝ ել գնաց նա ի վերայ Սալամաղ Ղուլին, եւ մատուցեալ պաշարեաց զամուրս նորա, եւ դժուարացաւ առնուլ զնա, զի էր բարձրաբերձ եւ անառիկ յոյժ։ Եւ յետ երկուց աւուրց բախելոյն զայն, դիմեալ ի վերայ Մխիթար սպարապետն եւ տէր Աւետիսն, մօտեցան ի պարիսպ անդ։ Իսկ նոքա քարաձիգ եղեալ ի վերուստ անտի մերժեցին զՄխիթարն. բայց տէր Աւետիսն խաբանօք ելեալ ի բերդն՝ կալաւ զոստիկանն. եւ յայսմիկ նուագի ի չորս կողմանց զեղանիլ սկսան զօրքն Հայոց, եւ հարին կոտորեցին զզօրս ամրոցին, եւ ի նմին աւուր մեռան ի Թուրքաց չորս հազար. իսկ ի Հայոց՝ սակաւ ոմանք։ Եւ անտի գնաց ի Սիսան գաւառ, եւ անդ կալեալ կոտորեաց զիշխանս Թուրքաց։ Եւ եկեալ պաշարեաց զմեծագոյն եւ զանառիկ բերդն Որոտնու, եւ էառ զայն յետ չորից աւուրց, ի տօնի Ծաղկազարդին։

---

[1] Ձեռագրին մէջ երկու բառի տեղ պարապ թողուած է, Յօհաննէս անունէն ետք. մատիտով յետոյ մէկը լրացուցած է, գրելով պետն Գուզարացւոց. գիրը Հ. Եղիա Վրդ. Փէշիկեանինն է։ Հմմտ. Գուլամիրեանցի հրատարակութեան մէջ (Դաւիթ Բէգ, Վաղարշապատ 1871, էջ 10, թիւ 28)։

Ը.— Եւ եղեւ յետ այնորիկ առաքել զբազմութիւն զօրաց իւրոց ի վերայ Պարկուշատու, եւ ինքն մնաց սակաւուք ի Սիսան գաւառի։ Եւ ել ի վերայ նորա խանն Նախիջեւանու չորեքտասան հազարաւ ի պատերազմ, եւ անկան ի նմին պատերազմի ի Հայոցն իննհարիւր այր։ Եւ անտի եկն Դաւիթ Բէկըն ի Հալիձոր, եւ ժողովեալ զարսն տեղւոյն՝ գնաց ի Շիշկետ, եւ անդ ի շարախօսելն զՊապայ զօրապետին՝ եհատ զգլուխ նորա։ Եւ անտի գնաց ի Ջաւնդուր, անդ եւս զօրաժողով լեալ, եւ առեալ ընդ իւր զզօրսն՝ գնաց ի վերայ Թուրքին, եւ հարին կոտորեցին Շահալպակլու գիւղորէսն, եւ զինչս նոցա առեալ՝ եկին ի դաշտն Կումանու։

Թ.— Եւ այր եկն առ նա, եւ ասէ. Ահա Թուրքն խափանու, Ուրդուարու, Թավրիզու եւ Ղարատաղու քսան եւ ութն հազարաւ դիմեալ գան կամ ի Մեղրի եւ կամ ի Կենաուզն։ Իսկ նորա լուեալ զայն՝ վաղվաղակի ժողովեաց զամենայն զօրս իւր եւ եկեալ բանակեցաւ ի Կալեր. եւ ընդ այգն ընդ առաւօտըն եհաս ի Լճկին, եւ սկսաւ պատերազմն. եւ իբր Է անց օրն՝ թողեալ անդ զԹուրքն՝ եկն ի Փուխուրութայ սարն, եւ անտի ի Հալիձոր։ Յայնժամ սկսաւ Թուրքն հարկանել զգիւղորայսն, կոտորել եւ ի գերի վարել, մինչեւ ի գալ նորա, եւ պաշարել զՄեղրի. եւ յետ հինգ աւուր պաշարմանն՝ առին զփոքրիկ թաղն։ Յայնժամ հրեշտակս արձակեցին ի Կալեր, զօրապետացն, գալ օգնութիւն հասանել ինքեանց։ Եւ ել գնաց գիշերայն Ստեփաննոս Շահում Ջատայն ի Ջաւնդուր, եւ ժողովեալ անտի զամենայն զօրս տեղեացն՝ յառաւօտուն պահու հասին արանցն Մեղրու, եւ հարին կոտորեցին զամենայն զբանակն Թուրքաց, եւ թափեցին ի նոցանէ զամենայն գերեալսն, եւ կալան զգլխաւորն նոցա. եւ առին զբոլոր բանակ եւ աւար բազում յոյժ։ Զայս մեծ բարութիւնս արար Ստեփաննոս Վարդանէս Շահումբանէս, որոյ զփոխարէնն հատուցէ նմա Աստուած։ Ուստի եւ Դաւիթ Բէկն ըստ արժանեացն փառաւորեաց զնա, տալով նմա զերկիր եւ զիշխանութիւն երից Մելիքաց, որպէս զի նա միայն իշխեսցէ եւ դատեսցէ զնոսա։

Արդ՝ իբրեւ զայս ամենայն յաջողեաց նոցա Աստուած, կոչեալ Դաւթի զզօրագլուխսն իւր՝ առաքեաց զնոսա ի Ղազան-

կուլու սարն, ի վերայ Թուրքմանաց. եւ գնացեալ անդ գիշե-
րայն՝ անկան ի վերայ ամենայն բնակչաց երկրին, եւ կոտոր-
եալք զնոսա՝ առին զամենայն ինչ նոցա, վեց հազար երեք-
հարիւր ոչխար, եւ չորս հազար հարիւր երեսուն զայլ անա-
սունս նոցա։ Եւ մինչդեռ զհետ մտանէին փախստէիցն՝ պա-
տահեցաւ միայնակ Մխիթար հազարապետն առաջի թշնա-
մեացն, առ որ քարաձիգ լեալ՝ կալան. իսկ նա աղաղակել
սկսաւ՝ թէ Թուրքն տանին զիս։ Եւ խկոյն աճապարեալ տէր
Աւետին՝ թափեաց ի ձեռաց նոցա։ Եւ առեալ զամենայն զաւ
եւ զաւար՝ դարձան ի Հալիձոր առ Դաւիթ, որոյ տեսեալ զայն
ամենայն՝ ուրախ եղեւ յոյժ։ Եւ յետ տասն աւուր՝ դարձեալ
առաքեաց զզօրսն ի լերինս Կապելու, ի վերայ Թուրքմա-
նին, որք գնացեալ հարին եւ զնոսա անդ, եւ առին զինչս նո-
ցա եւ զանասուն 900, եւ դարձան ի Հալիձոր։ Եւ յետ վեց ա-
ւուր՝ առաքեաց զնոսա ի վերայ բնակչաց գաւառին Պարկու-
շատու։ Բայց զի Մխիթար հազարապետն խռովեալ էր ընդ
տեառն իւրոյ, իբրեւ գնացեալ զօրքն հարին զբնակիչս երկ-
րին, եւ եւ Բաթալի խանն ընդդէմ նոցա, Մխիթարն փախեաւ։
Իսկ խանն կրճատեալ կոտորեաց ի սոցանէ 200 այր, եւ կա-
լեալ զպարոն Ստեփաննն ածին կապեալս ի Պարկուշատ քա-
ղաք։ Եւ զայն լուեալ Դաւթի՝ սրտմտեցաւ յոյժ ի վերայ Մխի-
թարայ, եւ հրամայեաց հատանել զգլուխն, այլ միջնորդեալ
ոմանց՝ դարձուցին զվճիռ մահուաննն։ Իսկ պարոն Ստեփաննն
իբրեւ ածեալ եղեւ ի Պարկուշատ՝ գտաւ անդ ոմն բարեսէր
Թուրք, որ գթացեալ ի նա՝ փախոյց. եւ լուեալ զայն Դաւթի՝
ուրախ եղեւ եւ հրամայեաց երկու[1] օր հանդիսութիւնս առնել։
Նաեւ որդւոյ Մելիք Փարսադանին Պալի զօրապետին գլուխն
հատեալ էին, բայց ոչ զբոլորն, այլ մինչեւ ցկէս ուղանն, եւ
նա այնպէս զգլուխն ի վերայ իւր կալնլով՝ եկեալ եհաս ի
տուն իւր զկնի չորից աւուրց։ Եւ ոչ մեռաւ, այլ կենդանի է
մինչեւ ցայսօր։

Յամի Տեառն 1724 եւ ի թուոյն Հայոց ՌՃՀԳ, Ահմէտ Սուլ-
տանն Օսմանցոց, որ բռնակալեալ ունէր ի պարսկական ծո-
ցոյ Օվկիանու մինչեւ ցՃգիպտոս եւ ցեւրիկէ եւ մինչ ցբոլոր
ծովն Պոնտոսի, եւ զմեծ մասն Հայոց եւ զայլ բազում աշ-
խարհս եւ զթագաւորութիւնս, իբրեւ լսէր զվտարումն Պարսից

[1] Ձեռ. Բ. օր։

*արքային ի յաթոռոյն, խորհեցաւ յինքն կրաւել զտէրութիւնն զայն։ Ուստի հրաման ետ իշխանի զօրուն՝ զօրաժողով լինել յամենայն աշխարհաց, եւ գալ հասանիլ ի վերայ Պարսից, եւ առնուլ զքաղաքս նոցա։ Եւ նա ըստ հրամանի արքային եկ ի վերայ Պարսից անթիւ անհամար զօրօք, ի կողմանս մեծին Հայոց, որ ի վիճակին Պարսից։ Եւ ուր ուրեք հասանէին՝ սատակէին զամենայն դիմակացս իւրեանց, եւ դառնային բազում աւարաւ ամենայն զօրքն ամ ըստ ամէ, մինչեւ ի լնուլ զամենայն քաղաքս եւ զգիւղս իւրեանց ի բազմութենէ աւարաց եւ գերեաց՝ ի Հայոց եւ ի Պարսից։ Բայց ո՞ կարէ պատմել զաղէտս մարց եւ տղայոց ի ձեռաց անօրէն գերչաց նոցա, եւ զնոցին հարց եւ եղբարց անողորմ կոտորած։ Արդ սոքա իբրեւ այսպէս զօրացան ի կողմանս յայնոսիկ, եւ առեալ զմայրաքաղաքն Երեւան՝ ի սուր սուսերի մաշեցին զամենայն բնակիչսն։*

**Ժ.**— *Ապա յամի Տեառն 172(6) եւ ի թուոյն Հայոց ՌՃՀ(Ե)*[1] *դիմեցին գալ հասանիլ յաշխարհն Սիւնեաց՝ որ այժըմ կոչի Խափան. յայնժամ ամենայն բնակիչք աշխարհի զատան անջատան ի Դաւիթ Պէկէն, եւ եղեն անձնատուրք Օսմանցւոց, եւ մնաց միայն Դաւիթ տասնեւեօթն սպառազինօք ի Հալիձորոյ անապատն, եւ ընդ նմա երեք վարդապետք, երեքտասան քահանայք*[2]*, զհետ գնացին նորա նաեւ տէր Աւետն եւ Մելիք Փարսադան։*

**ԺԱ.**— *Եւ ժամանակ ինչ կացեալ անդ, եւ յերեքտասանեբորդ աւուր քառասնորդաց պահոց եկին հասին ի վերայ նորա Պէքիր փաշայն եւ արապ Ալի Փաշայն, ընդ ինքեանց առեալ նաեւ զԲաթալի խանն եւ զամենայն զԹուրքս եւ զՀայս Խափանու եւ Պարկուշատու, զՀայսն Ջաւնդուրու եւ Մեղրու, զԹուրքսն Ղարաչօռլու, Փիսեանու, եւ այլն, իբր վացուն հազարս սպառազինաց, եւ բանակեցան հանդէպ Հալիձորոյ։*

---

[1] *Ձեռագրին մէջ, այս երկու թուականները կիսատ մնացած են, այսպէս. 172 եւ ՌՃՀ. բայց յետոյ մէկը մատիտով լրացուցած է, դարձնելով 1726 եւ ՌՃՀԵ. անշուշտ հետեւելով Գուլամիրեանցի հրատարակութեան (տե՛ս Անդ, էջ 43)։*

[2] *Ձեռ.* գ վարդապետ, ժգ քահանայք:

Իսկ որք ընդ Դաւթի էին հարիւր վաթսուն սպառազէն՝ եկին ի գետափն Հալուձորոյ, եւ յիսուն մի ի նոցանէ ճակատեցան ընդդէմ բանակի նոցա. բայց յետ երկուց աւուրց՝ թուփանքաւորքըն Հայոց անցին որք | ընդ Օսմանցոցն էին, խրամատեալ զսոսա դիմեալ մտին ի շէնն։ Յայնժամ Դաւիթ եւ որք ընդ իւրքն էին՝ դիմեալք ամրացան ի յամուրն անապատին, եւ անտի մարտ եդեալ կռուէին աւուրս հինգ, եւ անկանէին ի կողմանցն հակառակաց յաւուրն երեք հարիւր կամ չորս հարիւր մարդ։ Ի սոցանէ հազիւ մի ոք։ Եւ ի յաւուրն վեցերորդի, որք ի ներքս էին՝ կարգեցան կազմեցան պատրաստեցան եւ առեալ ընդ ինքեանս զԱչ սրբոյն Մինասայ՝ ելին արտաքս. իսկ որք ի ներքս մնացին եպիսկոպոսք, քահանայք եւ կուսանք ամենեքեան մտեալ յեկեղեցին՝ առ Աստուած գոչէին, եւ հնչեցուցանէին զզանգակսն. եւ ի յութերորդ ժամու աւուրն՝ սոքա յանկարծակի գաղանաբար յարձակեցան ի վերայ ամենայն բանակի նոցա, յաջ եւ ահեակ կոտորելով դղրդեցին զբոլոր բանակն Թուրքաց, եւ սկսան փախուստ առնուլ ի սոցանէ, եւ զայն տեսեալ՝ ելին արտաքս նաեւ տէր Աւետիսն եւ Մխիթար զօրապետն, եւ զհետ մտեալ նոցա՝ հասանէին հարկանէին եւ ցրուէին զնոսա, մինչեւ ոչ մնալ երկու ի միասին. եւ յաւուր յայնմիկ տապաստ արկին ի նոցանէ երեք տասան հազար սպառազէն, եւ առին զբանակն նոցա, եւ հարիւր քառասուն եւ ութն դրօշակ, եւ մեռան ի սոցանէ յոյժ սակաւ ոմանք։

Ահա այսպիսի մեծամեծք են գործքն Աստուծոյ, ապրեցուցանել ի ձեռն սակաւուց՝ ի բազմութենէ բիւրաւոր հեծելոց[1], զի յաղթութիւն պատերազմի ի ձեռս Աստուծոյ է, եւ ում կամի՝ նմա շնորհէ. արդ՝ եթէ անհաւատից եւ բարբարոսաց շնորհէ սակաւուք յաղթել բազմաց, ապա ո՞րչափ եւս բարեպաշտ քրիստոնէից, որք հաւատով դիմեն առ նա։

Արդ՝ իբրեւ ետես Դաւիթ թէ Աստուած օգնական է իւր, խնդրէր այնուհետեւ տալ պատերազմ ընդ Օսմանցոց, եւ առաքեաց առ խանն Տուզալի Քեզում զՄխիթար հազարապետն եւ զտէր Աւետիսն՝ վաթսուն եւ վեց արամբ , եւ ասէ. Ե՛կ միաբանեալ տացուք պատերազմ ընդ Օսմանցոց։ Եւ եկեալ գտին զխանն ի շէնն Քուրդաշեան, եւ պատմեցին նմա զբանն, բայց նա երկեաւ առնել զայն. իսկ եղբայր նորա խանն Լեքզում ջանայր հաւանեցուցանել, եւ մինչդեռ ընդ այս վի-



1 Հմմտ. Ա. Մակ. գ. 19։

ճէին, զօրքն Օսմանցոց եկեալ լցին զդաշտն Կրչեվանու։ Եւ ասեն Մխիթարն եւ տէր Աւետն ցխանն. Դիմեսցուք ի վերայ նոցա։ Բայց նա երկեաւ, եւ ոչ կամեցաւ գալ. յայնժամ սոքա վաթսուն եւ վեց արամբն սակաւ ինչ պատահեալ նոցա՝ անցին գնացին, եւ զօրքն Օսմանցոց մտին ի Մեղրի, քսան եւ երկու հազար վառեալք։ Եւ իբրեւ ընդ երեկս եղեւ՝ Մխիթարն եւ տէր Աւետն չորս արամբ եկին ի յայգեստանս Մեղրու եւ ժողովեցին զամենայն փախստեայսն Մեղրացոց անդէն. Խանըն եւս առաքեաց յիսուն վառեալ, եւ զիւրեանց զօրսն եւս եդին ի դարանի ի գլուխն Մեղրայ, եւ ինքեանք սակաւուք ի գիշերի մտին ի Մեղրի. եւ զօրացն պատուէր տուեալ էր նոցա, զի ընդ լուսանալն՝ դիմեսցեն ի քաղաք անդր, եւ իբրեւ առաւօտ եղեւ, իւրանց զօրքն ոչ հասին, բայց Օսմանցոցն իմացեալ զայն ամենայն, հեծան պատրաստեցան, եւ սկսան մեկնիլ ի քաղաքէն. եւ Մխիթարն. տէր Աւետն, եւ որք ընդ նոսա-ըս-կըսան ի ներքս հարկանել զվիրաւորս ի յՕսմանցոց, եւ հարին սատակեցին զհարկահանն։ Եւ յայսմ վայրի որ ի ներքո, որ արտաքս ի դարանին, հասանէին հարկանէին զՏաճիկսն եւ վանէին։ Բայց զի զօրքն Հայոց, որոց սպասէին, ոչ ժամանեցին, ասեն ցխանն. Ե՛կ ընդ մեզ, գնացեալ առցուք ի յՕզունպատ զանցս նոցա։ Ի յայն բան հասին զօրքն Օսմանցոց, եւ խանն փախեաւ, եւ սոքա կալան զանցս Օսմանցոց, եւ նոքա նեղեալ ի յԵրասխն դիմեցին՝ անցանել, եւ սոցա ի վերայ հասեալ՝ զբազումս ի գետն հեղձին[1] եւ զբազումս առ ետեղ սատակեցին։ Եւ անտի դարձեալ գան ի Մեղրի, եւ գտանեն անդ զանհամար կառափս Թուրքաց, եւ զանթիւ ինչս նոցա՝ ձիս, ջորիս, իբր չորս հարիւր տաղանդոյ ինչս։ Զբեռն հարկահանին բացին եւ գտին անդ երեսուն եւ երկու հազար թուղթս հարկաց, Եւ զԴաշդաց Նորվէլն սպանին վասն ուրանալոյն ըզՔրիստոս։

Ապա յետ այսորիկ իբրեւ ժամանակ ինչ էանց, եկն եւ եհաս ապստակիչ Փաշայն, եւ բանակեցաւ ի Բեղ գեղն, մի շաբաթ, եւ զոչ ինչ կարաց առնել։ Եւ սոքա ի գիշերի միում հասին ի վերայ նոցա, հարին կոտորեցին եւ զՓաշայն փախըստական արարին։

Յետ այսորիկ ութն հարիւր օսմանցի եկին ի Պարկուշատ,

[1] Ձեռ. զբազում ի գետն հեղձցին:

*առ ի գնալ ի Տաթեւ։ Զայն լուեալ սոցա՝ գիշերայն գնացեալ բանակեցան ի լեառն, որ կոչի Օքուզեարաթ, եւ կալան զճանապարհս նոցա, եւ ի յառաւօտուն պահու, իբրեւ հասին անդ, պատահեալ նոցա՝ առին զամենայն ինչս նոցա եւ սպանին ի նոցանէ իբր երեսուն եւ վեց սպառազէն, եւ զեօթն այր եւս գերեալ բերին ի Հալիձոր։ Ապա միւս այլ եւս զօր եկն Օսմանցոց, եւ բանակեցաւ ի գեօղ մի Թուրքաց, մերձ ի Մանլեւ, զնոսա եւս ի գիշերի ի վերայ հասեալ կոտորեցին, եւ միայն զերկուս ի նոցանէ կենդանի բերին ի Հալիձոր։*

**ԺԲ.**— *Արդ՝ իբրեւ ետես Դաւիթ Պէկն յամենայն ուրեք ըզթշնամիսն իւր առաջի իւր վանեալս, առաքեաց Շահ Թամազին երկուս բեռինս գլխովք սպանեցելոց։ Իսկ նա եւս առաքեաց սմա մի նժոյգ ձի, մի խաչալամ եւ իւրաքանչիւր զօրապետացն մի մի վերարկու, եւ զիշխանութիւն հատանելոյ զդրամ։ Գրեաց նաեւ զհրովարտակ եւ ասէ. Որքան խանք գոն ի կողմանսդ յայդոսիկ, գլխաւորն լիցի Դաւիթ Պէկն, եւ գնացեալ ի բաց հանցէ զՕսմանցին յերկրէն իւրմէ։ Յայնժամ եկեալ կալաւ զՄեղրի, եւ առեալ զզօրսն Մեղրու եւ Զանգրու՝ գնացեալ բանակեցաւ ի շէնն Կէչիվանու, եւ առաքեաց զզօրապետսն ի վերայ Ուրդովարու։ Եւ սոքա գնացեալ հասին ի վերայ քաղաքին, ի ժամ գիշերոյ, եւ հարին ի նոցանէ իբր երեք հարիւր այր. եւ մնացեալքն փախեան եւ գնացին, բանակ առեալ բանակեցան արտաքոյ քաղաքին. եւ սոցա առեալ զաւարն եւ արկին սեղանս՝ զի կերիցեն եւ արբցեն։ Յայնժամ վերահասեալ Դաւթի բարկացաւ ի վերայ նոցա եւ ասէ. Օսմանցին բանակ առեալ բանակի անդէն, եւ դուք նստեալ ուտէք եւ ըմպէք։ Եւ նոցա թողեալ զուտելն՝ դիմեցին ի վերայ Օսմանցոցն։ Իսկ նոքա զառաջինն իբրեւ տեսին, գիտացին թէ զօրն Պարսից է եւ յարձակեցան ի վերայ սոցա. եւ իբրեւ զփորձ առին եւ գիտացին թէ այն է զօրն Դաւիթ Պէկին, փախեան եւ եկին սոքա ի Դաշտուն, եւ արք տեղւոյն այնորիկ փախուցեալ անկան Ագուլէս քաղաք Հայոց։ Իսկ տէր Աւետիսն եւ Մխիթար սպարապետն հարեալ եւ փախուցեալ զՕսմանցին, առին ի նոցանէ զբազում ջոկս ձիոց եւ ջորեաց։ Եւ անտի եկին Մխիթարն եւ տէր Աւետիսն ի յԱգուլէս, իսկ արքն որք պահէին զմեծ դուռն քաղաքին, իբրեւ տեսին զնոսա՝ փախեան. եւ սոցա գնացեալ ի վաճառատեղն քաղա-*

քին՝ գտին զհարկահանն Օսմանցոց փախուցեալ, եւ գնացեալ անտի բանակեցան ի վանս սրբոյն Թովմայի առաքելոյ, եւ անտի տեսին արտաքս ամբոխ շփոթի. եւ ձի կալեալ երկու ոմանք ի նոցանէ եկին արտաքս, եւ գիտացին զի ոմն ի Թուրքաց յափշտակեալ զոմն գերի վարէր, եւ պնդեցան զհետ նորա, եւ նորա թողեալ զգերեալն՝ փախեաւ։ Արդ՝ սակաւ ինչ կացեալ անդ, տեսին զի Դաւիթ Պէկն եւս եմուտ յԱգուլէս, եւ եկին առ նա. եւ նա իւրաքանչիւրոցն զգեցոյց զմի մի պատմուճան. եւ վերստին դարձան բանակեցան ի սուրբն Թովմաս. իսկ արք քաղաքին եկեալ համբուրեցին ամենեքեան զձեռն Դաւիթ Պէկին՝ ըստ սովորութեան նոցա։ Եւ իբրեւ եկն մելիք Մոսին՝ որ տիրէր ի վերայ քաղաքին, եւ յանդիման եղեւ նմա, ասէ Դաւիթ ցարս իւր. Հատէք զգլուխ դորա ի գիշերիս յայսմիկ, զի այր նենգաւոր է դա։ Բայց մելիք Փարսադան արգել զայն, եւ ասէ՝ Ոչ է այնպիսի ոք սա։ Եւ մնացեալ սոցա ի քաղաքի անդ զաւուրս տասն, եւ յայսմիկ միջոցի Օսմանցին երիցս դիմեաց ի վերայ Դաւթի, եւ երիցս խորտակեցաւ և յանյաղթելի քաջ զօրաց սորա։ Ապա յետ այսորիկ արքայն Պարսից Շահ Թամաս առաքեաց յօգնութիւն Դաւթի զերիս խանս, եւ վերստին դիմեաց Օսմանցին եւ խորտակեցաւ ի սոցանէ։ Սակայն իշխանքն Ագուլէսի ծածկապէս դաշնադիր էին ընդ Օսմանցոց, եւ սոքա ոչ գիտէին. եւ յետ երկուց աւուրց՝ եկին հասին բազմութիւն զօրացն Օսմանցոց ի դաշտն Մարաղու, եւ բաժանեցան յերիս առաջս։ Իսկ որք ընդ Դաւթի էին՝ նոքա եւս բաժանեցան յերիս առաջս, խանքն Պարսից ի մի կողմն, տէր Աւետիսն եւ որք ընդ նմա էին՝ ի միւս կողմն, այսինքն՝ ի կողմն Երասխու, եւ մնացեալ զօրքն Հայոց ի մէջ երկուցն։ Արդ իբրեւ խմբեցան ի պատերազմ, խանքն Պարսից փախեան յերեսաց Օսմանցոց, բայց զօրքն Հայոց պինդ կացին հարին եւ վանեցին զՕսմանցին, եւ իբրեւ փախստականս արարին զնոսա, եւ ապա պնդեցան զկնի խանիցն (մինչդեռ փախստեայ երթային նոքա ի Թավրէզ), հասին նոցա եւ դարձուցին զամենայն զօրս նոցա, եւ բերին ի յԱգուլէս. բայց երկու խանքն փախեան։ Իսկ սոցա հասեալ կալան զերկուս տիկնայս նոցա, հանդերձ քսան եւ երկու աղախնեօք եւ ծառայիւք նոցա, եւ առաքեցին զնոսա ի Հալիձոր։ Արդ՝ յետ այսորիկ իբրեւ երկու աւուրք ի վերայ անցին, արքն Ագուլէսի եւ Մելիք Մոսին զդաւաճանութիւնս իւրեանց

յայտ արարեալ՝ գրոհ տուին ի մէջ քաղաքին եւ արձակել սկսան ի վերայ զօրացն Դաւթի թօփս։ Իսկ նոցա | խնայեալ՝ ի նոսա (վասն զի ամենայն քաղաքացիքն էին Հայ, եւ ոչ ոք այլազգի զոյր անդ), խուսափեցին ելին արտաքս քան զքաղաքն, եւ մինչդեռ ի ներքս սոքա պաշարեցեալ էին, ասէ Մելիք Փարսադան ցզօրսն. Մի՛ ինչ արձակէք հրացանս, զի ահա քաղաքապետն ելանէ արտաքս։ Եւ իբրեւ ել քաղաքապետն, այսինքն՝ Մելիք Մոսին արտաքս, սոքա հարեալ սպանին զնա թոփով։ Եւ անտի չուեցին գնացին ի գիւղ մի Թուրքաց, ուր էին հազար երեք հարիւր ոչխար սպանդանոցի Ագուլեցոց. զամենեսին զնոսին ածին ի Մեղրի։ Եւ յետ երկուց աւուրց՝ զօրականքն Դաւթի վերստին եկին յԱգուլէս, եւ հարին որ ինչ էր արտաքոյ քաղաքին, եւ գնացին ի Մեղրի, եւ անտի անցին գնացին ի Հալիձոր եւ բանակեցան անդ։

Արդ՝ իբրեւ եկին ի Հալիձոր, առաքեաց Դաւիթ Պէկն զտէր Աւետիսն առ զօրականսն, որք էին ի Զաւնդուր. իսկ նոքա մերժեցին զԴաւիթ եւ ոչ լուան նմա։ Եւ նորա եկեալ ծանոյց Դաւթի զապստամբիլն նոցա ի նմանէ, եւ թէ ո՛րպէս կացուցեալք են ի վերայ ինքեանց զկառավարս Օսմանցոց։ Յայնժամ հրամայեաց Դաւիթ չորեքտասան զօրագլխացն իւրոց երթալ կալնուլ եւ կապեալս ածել զնոսա առ ինքն։ Եւ ելին կազմեցան պատրաստեցան, ձի հեծան եւ գնացեալ հարին եւ կալան զզօրականս եւ զՕսմանցի ոստիկան կառավարն նոցա, եւ ածին ի Հալիձոր առ Դաւիթ. եւ նոքա մատուցեալ առաջի նորա՝ երդմնիւ եղեն նմա թե այսմհետէ քեզ հնազանդիմք յաւիտեան։ Եւ նորա հաւատացեալ նոցա՝ զերկու զօրականս առ ինքն եթող, եւ զայլսն ետ ի ձեռս տէր Աւետին, զի ի ներքոյ իշխանութեան նորա լինիցին։ Եւ նորա առեալ տարաւ զնոսա ի Զաւնդուրն եւ արձակեաց զնոսա ի տունս իւրեանց։

Եւ յետ այսորիկ իբրեւ չորք աւուրք ի վերայ անցին, ելին Բաթալի խանն, եւ զօրքն Օսմանցոց, եւ հարին զերիս գիւղս Հայոց ի գիշերի, եւ կալեալ զերիս զօրապետս՝ ածին ի Պարկուշատ. եւ յետ երկուց աւուրց, իբրեւ լուաւ տէր Աւետիսն՝ ժողովեաց զզօրսն իւր, եւ գնացեալ ի գիշերի եհար զնոսա, եւ կալաւ զերկու թուրք զօրականսն, եւ զամենայն ինչս նոցա էած ի Զաւնդուր։

**ԺԳ.**— Եւ ի ժամանակի յայսմիկ մեռաւ Դաւիթ Պէկն խա-

*ղաղութեամբ ի տան իւրում, յամի Տեառն 17(28) եւ ի թուին Հայոց ՌՃ(Հէ)*[1]*, ի յամսեանն ....։*

*ԺԴ.— Արդ՝ իբրեւ վախճանեցաւ Դաւիթ Պէկն, զօրականքն ամենեքեան միաբանեալք կացուցին ի վերայ ինքեանց իշխան զՄխիթար զօրագլուխն։ Բայց զկնի միոյ տարւոյ, վասն զի զօրականք միմիանցն ոչ հպատակեցան, ուստի Օսմանցին եկեալ էառ զբերդն Դաւթի, եւ գերի վարեցին զամենայն բնակիչսն նորա. իսկ Մխիթարն փախուցեալ ի նոցանէ՝ գնաց վերստին զօրս գումարեալ ի Հայոց եւ Թուրքաց, վերստին խորտակեաց զՕսմանցին, եւ դարձոյց յետս զքաղաքսն եւ զամուրս ի նոցանէ։ Էառ եւ զՈւրդուար քաղաքն եւ կոտորեաց զամենայն որ ինչ էր ի նմա, եւ էառ զաւար բաղում յոյժ, եւ զհարիւր վաթսուն բեռինս ուղտուց։ Եւ ինքն դարձ արարեալ անտի, եկեալ ժամանակ ինչ բնակեցաւ ի յամուրն Խնձորէկս. եւ անդ իւրոց զօրացն հարեալ թափով սպանին*[2]*. եւ վաղվաղակի Հայոցն հատեալ զգլուխ նորա՝ տարին առ Փաշայն Թավրիզու. եւ նա ըստ արժանեացն հատոյց նոցա, հատանելով զգլուխ անզգամացն, եւ ասէ. Զիա՞րդ իշխեցիք ըղայդպիսի քաջ այր սպանանել ի զուր տարապարտուց։ Եւ տէր Աւետիսն յայնմիկ ժամանակի փախուցեալ գայ ի Գաղատիա(յ), եւ անտի դիմէ առ Սրբազան Հայրապետն Հռոմայ եւ առնու զներումն*[3]*։*

*Այսոքիկ էին զօրավարք եւ զօրապետքն Դաւիթ Պէկին, մինչ էրն ի Շնհեր. Մխիթարն, մեծ Կորկին, վրացի Յօհան-*

[1] *Ձեռագրին մէջ այս երկու թուականները կիսատ մնացած են, այսպէս 17... ՌՃ... բայց յետոյ մէկը մատիտով լրացուցած է, դարձնելով 1728 եւ ՌՃՀէ, անշուշտ հետեւելով Գուլամիրեանցի հրատարակութեան (տե՛ս* Անդ*, էջ 68)։*

[2] *Ձեռագրին մէջ այստեղ դրուած է ԺԴ. բաժանումը, զոր մենք զետեղեցինք 12 տող աւելի վեր, ըստ իմաստին, աւելի տրամաբանական բաժանում մը ստեղծելու նպատակով։*

[3] *Ձեռագրին մէջ կան սրբագրութիւններ այս վերջին նախադասութեան մէջ, զոր կրկին կը դնենք հոս, ընդգծելով եւ փակագծի մէջ առնելով այն բառերը՝ որոնք մելանով եղծուած են, վրան գիծ քաշելով. «Եւ տէր Աւետիսն յայնմիկ ժամանակի փախուցեալ* (ժամանակ ինչ բնակեցաւ) *գայ ի Գաղատիա, եւ անտի* (եկեալ ի Վենետիկ) *դիմէ առ Սրբազան Հայրապետն Հռոմայ եւ առնու զներումն»։*

նէսն, Բանդուր Զաքարիա իշխանն, փոքր Կորկին, Աւդանտել իշխանն Պայինտուր իշխանն Վրացի (այդ սոքա Վրացի ասին, ըստ որում էին յերկրէն Վրաց, այլ ոչ եթէ էին ի Վրաց ազգէն, վասն զի Դաւիթ եւ ամենայն զօրավարք եւ զօրքն իւր էին ի յազգէ Հայոց). դարձեալ Ծատուրն, Ղարակեօզն, Թաթէոսն, Եղիազարն, Յարութիւնն եւ այլն. այսքան զօրօք...։

Որք ի Շնհեր բնակէին քաջ զօրավարքն Դաւթի. էին այսոքիկ. Պուան զօրապետն, Պակի զօրապետն, Մինասն, Ստեփաննոսն ,եւ ընդ նոսա 550 զօր։

Որք ի Տաթեւ՝ էին այսոքիկ. Ղիչին, Այտին, Եսային, Տիրացուն, Սիմէոնն, Ապկարն, եւ ընդ նոսա 400 զօր։

Որք ի Ջանդուր գաւառին՝ էին այսոքիկ, Թորոսն, Վարդանն, Մարսաթան, Նուպարն, Թովմասն, Թուրինչն, Յօհաննէսն, եւ ընդ նոսա 2000 զօր։

Եւ ի Կալեր էր Պապ զօրագլուխն, եւ ընդ նմա 700 զօր։ Իսկ Ստեփաննոս Վարդանէսեան, որ ի տանէն Շահումեան, էր սպարապետ եւ տեղակալն Պապայ ,եւ էր սիրելի յաչս Դաւթի, վասն իւրոյ քաջութեան եւ ազնուականութեանն. ուստի ետ նմա յետոյ նաեւ զիշխանութիւն եւ զկալուածս երից Մելիքաց։

Եւ ի Մեղրի էին այսոքիկ զօրավարք. այսինքն՝ Կոստանդին, Յօհաննէսն, Սարին, Առաքելն, եւ ընդ նոսա 400 զօր։ Սոքա զդէմ կալան ութուտասան հազար զօրացն ի յամուր աւանն Մեղրեայ, եւ ի գիշերի միում սակաւուք ի վերայ յարձակեցան ութուտասան հազարացն, եւ ետուն նոցա զմեծամեծ հարուածս։

Յետ այսորիկ որդիքն Մաղաչուղին եւ Տիլէնչի մականուանելոյն էին, չորեք հարիւր արամբք։

Զօրավարն Սիսանայ՝ հինգ հարիւրով։

Մէլիք Ղուչուն՝ երկու հարիւրով։

Աւշար երէցն, որ եւ կոչի տէր Գասպար, երկերիւր յիսնաւ։

Ատոմ զօրավարն Պտղաբերդու՝ հարիւր յիսնաւ։

Ղազար զօրավարն Կուլաբերդին՝ հարիւր տասամբ։

Սարգիս զօրավարն Շիվանու ձորոյն՝ երկերիւր յիսնաւ։

Մելիք Փարսադան ի Հալի ձոր երկրին՝ երկերիւր յիսնաւ։

Եւ տէր Աւետիսն ի նոյն Հալի ձոր՝ չորեք հարիւր վաթսուն եւ ութն արամբ։

Տէր Աւետիս արար զբազում մեծամեծ քաջութիւնս, որպէս եւ ի պատմութեանս իսկ տեսանի. զի էր կարի քաջ եւ արիասիրտ եւ զօրաւոր յոյժ՝ բանիւք եւ գործովք. եւ վասն այսորիկ նա յորմէ հետէ հեռացեալ ի Հայրենի երկրէն պանդըխտեցաւ ի Գաղատիայ, բազումք յորդորէին զնա ի Հայրենի նորին գաւառէ՝ անդրէն դառնալ առ նոսա եւ պաշտպանել զերկիրն զայն. բայց նա հրաժարէր յաղագս պատուոյ իւրոյ քահանայական կարգին, որպէս եւ ոմն յարգելի երիցանց անտի գրեաց առ նա զայս ոտանաւոր առ նոյն յորդոր։

Ի նուազիլ Հայոց ազգի,
Ի դառն եւ նեղ ժամանակի,
Յաղթող զօրեղ երեւեցար,
Քաջ զինաւոր տէր Աւետիս։
Սարսին ի քէն ազգն Տաճկաց,
Զի յաղթեցեր նոցին զօրաց,
Զարքայական զէնն Քրիստոս,
Տէր Աւետիս, քեզ պարգեւեաց,
Արիական զօրօք քոյին,
Յաղթեցեր չար Գրիգորին,
Զի ուրացաւ ըզՔրիստոս,
Դու կտրեցեր գլուխ նորին։
Հասեր արագ բերդն Մեղրին,
Սատակեցեր ըզխարաճին.
Երեսն հազար թուղթ խարաճին
Այրեցեր ի մէջ կրակին։
Ազնիւ զօրօք քաջ եւ ընտիր,
Ազուլեաց դաշտն ճէպէիր.
Անարգողաց սրբոյ խաչին,
Տէր Աւետիս վրէժխնդիր,
Կրկին խնդրեմք արիանալ,
Պալի Պէկին զինուորանալ.

*Հայոց ազգին թեւ եւ թիկունք,*
*Տէր Աւետիս, բարեաւ երթաս։*
*Էրէցս ապիկար անարժան,*
*Խնդրեմք սրբոցն համանգամայն.*
*Խաչեալ Աստուած, Տէր իմ Յիսուս,*
*Տէր Աւետիս քեզ պահապան*[1]։

---

[1] *Սոյն քերթուածը հրատարակած է Հ. Եղիա Վրդ. Փէշիկեան (տե՛ս* Բազմավէպ *(ԴՁ)* 1938, *թ.* 6—9, *էջ* 187):

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Հրատարակության է ներկայացրել
համալսարանի հայագիտական հետազոտությունների լաբորատորիան

Հրատարակչության խմբագիր՝ Լ. Լ. Աղայան
Գեղարվեստական խմբագիր՝ Ն. Ա. Թովմասյան
Տեխնիկական խմբագիր՝ Ա. Մ. Գյուլգյուլյան
Վերստուգող սրբագրիչներ՝ Մ. Գ. Յավրյան, Ս. Վ. Ղազարյան

Հանձնված է շարվածքի 12.04.1991 թ.։ Ստորագրված է տպագրության 27.04.1992 թ.։ Չափսը՝ 84×108 1/32։ Թուղթ՝ № 2 տպագր.։ Տառատեսակը՝ «Սովորական»։ Տպագրության եղանակը՝ «Բարձր»։ Հրատարակչական 5,1 մամուլ։ Տպագրական 3,5 մամուլ=5,88 պայմանական մամուլի։ Տպաքանակ՝ 10000։ Պատվեր՝ 426։ Գինը՝ պայմանագրային։

Երևանի համալսարանի հրատարակչություն, Երևան, Մռավյան փ. № 1։
Издательство Ереванского университета. Ереван, ул. Мравяна № 1.

Երևանի համալսարանի տպարան, Երևան, Աբովյան փ. № 52։
Типография Ереванского университета, Ереван, ул. Абовяна, № 52.